



# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ԱՅԳԱԲԱՑ

ԵՓՐԱՔՍՅԱ ԱԶԱՏՅԱՆ

Ինչքա՞ն խոյանք, ինչքա՞ն տենչանք, ինչքա՞ն ծիծաղ կա քո մեջ,
Իմ հայրենիք՝ Հոկտեմբերի արևաշող այգաբաց.
Գարունը քո, ամառը քո, աշունը քո ճոխ ու պերճ
Խինդ է բերում, հույս է բերում մարդկությանը սրտաբաց։

Դրոշներիդ կարմիր փայլով օրն է բացվում աշխարհի,
Դու նոր արև, որից ահա ծաղկում է նոր մի գարուն,
Դու չես թողնի ցուրտ ձմեռը հողագնդում երկարի,
Վերջին ձյունն էլ դու կհալես քո կենսաբեր շողերում։

Փա՜ռք քեզ, միշտ փա՜ռք, Հոկտեմբերի արևաշող այգաբաց,
Քո շողերով դու մարդկության վառ գալիքն ես ավետում.
Ինչքա՞ն խոյանք, ինչքա՞ն տենչանք, ինչքա՞ն ծիծաղ սրտաբաց,
Վառ արևներ ես հրդեհում վաղվան բացված մեր սրտում։

# Ինչպես ծնվեց ԼԵԳԵՆԴԸ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Ջոկատին այն ժամանակ կոլեկտիվ էին ասում և ամեն պիոներական կոլեկտիվ կցված էր մի գործարանի կամ մի հիմնարկի։ Մերը կարբիդի գործարանինն էր։ Մենք մի երգ ունեինք։ Ասենք այդ երգը մերը չէր, բայց մերոնցից չգիտեմ ով համարեցրել էր մեր կոլեկտիվին։ Երգում էինք շարքով երթի գնալիս։ Երգի ամեն տան մեջ պատմում էինք մեր կատարած այս կամ այն լավ գործի մասին, հպարտանում էինք մեր Վազգենով, որ սպորտային մրցումների ժամանակ ամենաարագն էր վազել, պարծենում էինք մեր փողային նվագախմբով, որի գործիքները կարբիդի գործարանի բանվորներն էին նվիրել մեզ, հայտարարում էինք ի լուր աշխարհի, թե քանի ծառ ենք տնկել գարնանային ծառատունկի ժամանակ։ Մի խոսքով լավ երգ էր։

Բայց երգն ուներ նաև այնպիսի տողեր, որ փողոցով անցնելիս մենք երգում էինք առանց հըպարտության.

Կարբիդի կոլեկտիվում,
Զում-չարա՜, չու-րա՜-րա՜,
Շատ բացեր են նկատվում,
Կու-կու, խա՜-խա՜...

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Լույս է տեսնում
1923 թվականից




№ 11 ՆՈՅԵՄԲԵՐ
1966 Թ.

Դե. ի՞նչ մի հաճելի բան է սեփական թերությունների մասին հայտարարել փողոցում, երբ մայթերին կանգնած մարդիկ նայում են անցնող շարքին. իսկ փոքրիկ աղջիկներն այս ու այնտեղ փռթկացնում են:

Այս տողերից հետո. որ մենք միասին էինք երգում, մեներգիչ Բաբկենը մեկ առ մեկ թվում էր բացերը. չարության համար բնագիտության ուսուցչուհի ընկեր Խուդոյանը դասարանից դուրս է արել Մարգարին ու ինձ. ֆիզկուլտուրայի դասին Լևոնն ութ անգամ փորձել ու չի կարողացել թռչել «այծի» վրայից. Նազիկը հուշում է. Եվան դասի ժամանակ ծամոն է ծամում....

Երգի այս մասում մեր թմբկահար Համոյի թըմբուկը նվաղում էր, իսկ կոլվար Անուշավանը բարկանում էր.

— Համո՛:

Համոն մի երկու անգամ ամուր զարկում էր թմբուկին, հետո նորից ականջ էր դնում Բաբկենի ծաղրական տողերին ու կրկին ձայնը մեղմում: Դրա փոխարեն. երբ մենք քայլերգի առաջին մասն էինք երգում, Համոն կատաղի հարվածում էր թմբուկին. փողոցով մեկ թնդացնելով մեր հպարտությունը: Ես չգիտեմ. թե ինչ էր մըտածում նա այդ ժամանակ. բայց երևի զգում էր. որ թմբուկը թերությունները հաշվելու գործիք չէ. որ թմբուկով մարտի պիտի գնալ կամ ուրախ հանդեսի:

Մի տեսնեիք նրան. երբ երեկոյան մեր շարքը ելնում էր ջահերով երթի: Փոքրիկ քաղաքի կենտրոնական փողոցը հանկարծ լուսավորվում էր տասնյակ ջահերի լույսով: Նիզակների ծայրերին ամրացրած թիթեղե ամանների մեջ նավթաշաղախ խծուծը բռնկվում էր միանգամից. կարծես խավարում տասնյակ աստղեր էին պլպլում. թնդում էր դեպի Քանաքեռի բարձունքը շարժվող կոլեկտիվի երգը.

Մենք դարբիններ ենք,
Հոգով արի ենք,
Դարբնում ենք վաղվա բանալին...

Ու Համոյի թմբուկը հազար ու մի հաղթական երանգներ էր հնչեցնում: Չէիր հավատում. թե շարքի առջևից գնում է միայն մի հատիկ թըմբկահար. մի հատիկ թմբուկով: Ոչ. դա մի ամբողջ նվագախումբ էր. որ լսելի էր դարձնում մեր սըրտերի իղձն ու երջանկությունը. այն. որ մենք դարբիններ ենք. այն. որ հոգով արի ենք. այն. որ մենք ենք դարբնում վաղվա բանալին...

Սիրտդ լցվում էր հպարտությամբ քո հայրենիքի համար. քո այսօրվա ու քո վաղվա համար:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Իհարկե. ուրիշներն էլ կային: Նույնիսկ ես. մեր պիոներական ակումբում հաճախ էի փորձում ռիթմով հարվածել թմբուկին ու. թվում է. կարողանում էի: Բայց իմ և մյուսների հարվածների մեջ հոգի չկար: Ուրիշ էր Համոն. Երևանի. չէ՛. ինչ եմ ասում, գուցե և աշխարհի առաջին թմբկահարը...

Եվ չգիտես ինչու. Համոն երաժիշտ չդարձավ: Նա դարձավ շինարար ու Լենինի հրապարակի կա-

ռավարական տունը կառուցեց պատերազմից առաջ: Մեծացել էինք: Արդեն ուրիշ պատանի պիոներներ էին քայլերթում կառուցվող քաղաքի փողոցներում, ուրիշ քայլերգեր կային, ուրիշ թմբուկներ էին որոտում, լավ կամ վատ, լավ, բայց ոչ Համոյի թմբուկի չափ ոգևորված ու հոգեպարար: Համոն ուրիշ էր, ուրիշ էր իսկական թմբկահարը...

Պատերազմի ժամանակ ես ու Համոն միասին մեկնեցինք ռազմաճակատ, ընկանք նույն գունդը ու միասին գնացինք մարտի՝ Կերչի թերակղզում: Կռվում էինք բոլորի նման՝ հայացքներս հառած Ղրիմի գյուղերին, որ ավերել էին գերմանացիները: Մռայլ էր ընկերս: Նա դժվար էր տանում վիրավորանքը ու ատամները սեղմած նետվում էր սվինամարտի: Հերոսները միայն նրանք չեն, որոնց կրծքերը զարդարված են բազմաթիվ շքանշաններով, կան և այնպիսի հերոսներ, որոնց չի նկատում հրամանատարությունը, ռազմաճակատում բոլոր հերոսներին չես նկատի, դրա համար ժամանակ էլ չկա...

Գյուղը քանդված էր, միայն այս ու այնտեղ հատ ու կենտ կանգուն տներ էին մնացել: Մայրամուտին գրավեցինք ու հրաման ստացանք խրամատավորվելու: Գիշերը դադար եղավ: Ես ու Համոն մտանք կանգուն տներից մեկը: Եվ այդտեղ, ձեղնահարկում Համոն պիոներական մի թմբուկ գտավ երկու փայտիկներով: Քանդված առաստաղից ընկած լուսնի լույսով ես տեսնում էի նրա մանկացած դեմքը, նույնիսկ շրթունքներն առաջ էին եկել, ինչպես լինում է, երբ խռովում է երեխան:

Թմբուկն իջեցրեց ձեղնահարկից, իսկ առավոտյան առաջին ու վերջին անգամ նկատողություն ստացավ դասակի հրամանատարից.

— Ի՞նչ ես բարձվել, ոնց որ...

Հրամանատարը չվերջացրեց:

Առավոտյան սկսվեց նոր հարձակումը: Թշնամու կատաղի կրակի տակ մենք գրոհի գնացինք: Իմ կողքից վազում էր Համոն: Զինվորի հանդերձանքն առանց այն էլ շատ է, հրացան, հակագազ, սակրավորի բահ, ուսապարկ, փամփուշտներ... Այդ բոլորի հետ Համոն քարշ էր տալիս պիոներական թմբուկը, որ վազքի ժամանակ վեր ու վար էր անում ու հարվածում նրա կողին: Ինձ տարօրինակ էր թվում ընկերոջս արարքը: «Ո՞ւմ է հարկավոր այդ թմբուկը կռվի թոհուբոհի մեջ».—մտածում էի ես:

Հարթավայրում թշնամին մեզ մեխեց գետնին: Դեմից շան նման հաչում էին նրա տանկային գնդացիրները, ականանետները չոր տկտկում, ու որքան էլ մեր հրետանին թիկունքից հարվածում էր գերմանական դիրքերին, մենք գլուխ բարձրացնելու հնար չունեինք: Երկու անգամ փորձեցինք ելնել, երկու անգամ կպանք հողին, չէ, ցերեկով այդ հարթավայրն անցնել հնարավոր չէր...

Ու հանկարծ ես տեսա նրան: Կանգնել էր խրամատի վրա ձգված, այնպես ինչպես շարքի առաջ էր կանգնում մեր մանկության օրերին:

— Գնացի՜նք, —գոռաց բարձր ձայնով:

Հիմա էլ չեմ հասկանում, թե ինչպես էի լսում նրա թմբուկի ձայնը ռազմաճակատի որոտի մեջ: Բայց մի՞թե մի հատիկ թմբուկ էր դա, դա մի ամբողջ նվագախումբ էր, որ ետ էր բերել մեր բոլորի մանկությունը.

Մենք դարբիններ ենք,
Հոգով արի ենք,
Դարբնում ենք վաղվա բանալին...

Մեր շարքը գնալով նոսրանում էր, բայց մենք չէինք վազում, Համոյի թմբուկը վազք չէր առաջարկում, Համոյի թմբուկը երթի էր տանում, հանդիսավոր, հաղթական երթի: Երևի սա էր սարսափելին թշնամու համար: Նա նկատում էր նոսրացող շարքը, բայց և նկատում էր, որ շարքում ոչ ոք չի կռանում, չի վազում... Մեկը թմբուկ է զարկում ու վաշտն ատամները սեղմած գալիս է սվինամարտի...

Նրանց կրակը հանկարծ լռեց, հետո մենք տեսանք նրանց գորշ մեջքերը և միայն այդ ժամանակ վազեցինք:

Վազեցին բոլորը, բացի Համոյից: Նա հանկարծ կռացավ, դանդաղ չոքեց ու վայր գցեց թմբկահարի փայտիկները...

* * *

Ընկերոջս հետմահու պարգևատրեցին, իսկ դրանից հետո գերի ընկած գերմանացիները ամենուրեք մի լեգենդ էին պատմում:

Սովետական բանակի յուրաքանչյուր վաշտի առջևից գնում է մի երկաթե թմբկահար, Հերկուլեսի պես հաղթանդամ է նա, գնդակը չի ծակում նրա զրահը: Նրա թմբուկն էլ սովորական չէ, մի որոտաձայն գործիք է, որ սառեցնում է մարդու արյունը, թուլացած ձեռքից վար ձգում հրացանը, ակամայից շրջվում և ուզում ես փախչել մինչև Բեռլին...

Միամիտներ, հավատում էին իրենց հնարած լեգենդին: Չէին էլ մտածում, որ ընկերս, նույնիսկ, բարձրահասակ էլ չէր, որ նրա թմբուկն էլ պիոներական հասարակ թմբուկ էր միայն, որ իրենք չէին հասցրել գողանալ սովետական գյուղից: Չէին հասկանում, որ Համոյի սիրտն էր թնդում ռազմաճակատով մեկ, պատմում աշխարհին, որ մենք դարբիններ ենք, որ հոգով արի ենք, որ դարբնում ենք վաղվա բանալին և որ վաղվա բանալին դարբնողին ընկճել չի կարելի, հաղթել հնարավոր չէ:

50 ՏԱՐԻ







# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՊԱՀԸ

ՅՈՒՐԻ ՅԱԿՈՎԼԵՎ

Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես զրահապատ ավտոմեքենա եմ։ Զինված եմ «Մաքսիմ» տեսակի երկու գնդացիրով։ Կանգնած եմ Նևայի գետափին, Մարմարե պալատի բակում։ Իսկ դիմացը, Կիրովյան կամուրջից այն կողմ, Նևայի մթին ջրերում կանգնած է «Ավրորա» հածանավը։

Լուռ են «Ավրորայի» հրանոթները։ Լուռ են և իմ գնդացիրները։ Երկուսս էլ հավիտենական հերթափոխի ենք կանգնած, մենք՝ հեղափոխության հին ժամապահներս։

Այժմ, իհարկե, հրթիռակիր տանկերի հետ համեմատած, ես շատ համեստ արտաքին ունեմ։ Բայց կար ժամանակ, երբ իմ անունն էլ էր զըրընգում ամպրոպի նման։ Զրահապա՛տ։ Հեղափոխության թշնամիները մինչև հիմա էլ ատելությամբ են նայում ինձ։

Բալթիկայից փչում է քամին։ Անձրևի կաթիլները թմբկահարում են զրահս։ Շաչում են Վիբորգյան գործարանի շչակները, և նրանց հուժկու ձայնի տակ ես մտաբերում եմ իմ ջահելությունը։ Ու երբեմն էլ ինձ թվում է, թե պողպատե կրծքիս տակ մոտորը կենդանություն է առնում, իսկ մարտի պատրաստ գնդացիրները սրատես հայացքով նայում են զրահիս անցքերից...



Շատ ու շատ տարիներ առաջ, նախքան Առաջին համաշխարհային պատերազմը, ես ոչ թե զրահամեքենա էի, այլ հասարակ մի ավտոմեքենա։ Հենց որ սկսվեց պատերազմը, ինձ բանակ կանչեցին և իսկույն ուղարկեցին Իժորյան գործարանը՝ ռազմական տեսք ստանալու համար։ Մետաղագործներն ինձ պատեցին զրահով։ Ու երբ ժամանեցի Պետրոգրադ, ոտից-գլուխ պողպատ էի հագել, միայն անիվներս էին ազատ շունչ քաշում։ Պետրոգրադում ինձ քննության ենթարկեցին։ Հանձնաժողովն ստուգում էր, թե ինչպես է աշխատում իմ մոտորը, սարքի՞ն են արդյոք արգելակները։ Գրագիրը նշումներ էր անում։

— Ծննդյան թի՞վը։

— 1913։

— Բարձրությո՞ւնը։

— Երկու մետր հիսունութ սանտիմետր։

— Երկարությո՞ւնը։

— Չորս մետր յոթանասուն։

— Ինչո՞վ է զինված։

— «Մաքսիմ» տիպի երկու գնդացիրով։

Դրանից հետո ինձ ուղա՛րկեցին Միխայլովյան մանեժը, որտեղ ընդունվեցի պահեստային դիվիզիոնի կազմում։ Դա այնքան էլ հետաքրքիր կյանք չէր։ Բայց ես հավատում էի, որ կգա իմ ժամանակը։

Եվ այդ ժամանակը եկավ։ 1917 թ. ապրիլ...

Նևան դեռ սառցակալած էր, բայց ձնհալն արդեն ընկել էր։ Ամբողջ օրը կտուրներից աղմուկով թափվում էին կաթիլները։

Մի անգամ, օրվա վերջում, մեզ մոտ եկավ ընկեր Ելինը։ Նա հավաքեց դիվիզիոնի բոլոր բոլշևիկներին և ասաց.

*— Ընկերներ, ես կարևոր լուր ունեմ հաղորդելու: Այսօր երեկոյան Պիտեր է ժամանելու Լենինը: Ընկեր Պոդվոյսկին կարգադրել է զրահապատը տանել կայարան, ասում է՝ թող Վլադիմիր Իլյիչը տեսնի, թե Պիտերի բոլշևիկները ինչպիսի՜ մարտական ուժ ունեն:*

*Իսկ երեկոյան, կայարանի գլխավոր մուտքի մոտ կանգնած՝ ես անհամբերությամբ սպասում էի Վլադիմիր Իլյիչին: Ահա և երևաց Լենինը: Նրա հագին վերարկու կար, գլխարկը ձեռքին էր: Աչքերն ուրախությունից փայլում էին, և փոքրինչ հուզված տեսք ուներ: Նա չէր կարծում, թե իրեն դիմավորելու համար այդքան մեծ բազմություն կգա: Բոլոր լուսարձակները իրենց լույսերն ուղղեցին Լենինի վրա: Վլադիմիր Իլյիչը կկոցեց աչքերը և երեսը մի կողմ դարձրեց: Իսկ հրապարակը թնդում էր.*

*— Կեցցե՜ Լենինը:*

*— Կեցցե՜ հեղափոխության առաջնորդը:*

*— Կորչի՜ պատերազմը:*

*— Կեցցե՜ հեղափոխությունը:*

*Լուսարձակների շողքերը թույլ չէին տալիս, որ Լենինը որևէ բան տեսնի: Ի վերջո լուսավորողները հասկացան դա և հեռացրին լույսերը: Լենինը նայեց շուրջը: Նկատելով զինվորական պահակախմբին, հարցրեց.*

*— Պահակախումբը մե՞րն է:*

*— Մերն է, Վլադիմիր Իլյիչ,—պատասխանեց ընկեր Պոդվոյսկին:*

*— Իսկ զրահապատ մեքենանե՞րը:*

*— Նույնպես մերն են:*

*Վլադիմիր Իլյիչը գոհունակությամբ շարժեց գլուխը: Ես նկատեցի դա և հպարտության մի հորձանք անցավ մարմնովս:*

*Հետո մեկն ասաց.*

*— Վլադիմիր Իլյիչը պետք է ճառ ասի, բայց տրիբուն է հարկավոր, որպեսզի բոլորը լսեն:*

*Այդ ժամանակ զինվորներից մեկը ձեռքով արեց իմ կողմը.*

*— Սրանից էլ լավ տրիբու՞ն:*

*Լենինին դուր եկավ այդ առաջարկը: Նա մոտեցավ ինձ և ասաց.*

*— Հուսալի տրիբուն է:*

*Տասնյակ ձեռքեր միանգամից մեկնվեցին դեպի Վլադիմիր Իլյիչը և նրան բարձրացրին իմ աշտարակի վրա: Լուսարձակները նորից դարձան դեպի Լենինը: Ջնայած մութ էր, բայց Լենինն, ասես, կանգնած էր արեգակի շողերի մեջ: Նա բարձրացրեց ձեռքը և արտասանեց առաջին բառը.*

*— Ընկերնե՜ր...*

*Նա խոսում էր այն մասին, որ թեև թագավորին գահընկեց են արել, բայց իշխանությունը դեռևս չի անցել բանվորների և գյուղացիների ձեռքը, որ երկիրը դեռ կառավարում են հարուստները: Իսկ դա նշանակում է, որ վերջին և վճռական մարտը դեռ առջևում է:*



*— Հեղափոխությունը դեռևս չի հաղթանակել,— ասում էր Լենինը,— բայց անպայման կհաղթանակի: Պատրաստվի՛ր մարտերի, Պիտերի պրոլետարիա՛տ:*

*Այդ խոսքերը լսելուն պես իմ մեջ ցանկություն առաջացավ իսկույն սկսել մարտը և գնդացիրներից կրակի հեղեղ բաց անել հեղափոխության թշնամիների վրա: Ու հենց այդ պահին Վլադիմիր Իլյիչը գոչեց.*

*— Կեցցե՜ սոցիալիստական հեղափոխությունը:*

*Եվ հազարավոր մարդիկ իրենց հուժկու ձայնով արձագանքեցին նրան.*

— Ուռաա՛աա՛...

Երբ լռեցին վերջին «ուռա»-ները, Վլադիմիր Իլյիչն իջավ իմ աշտարակից և կանգնեց ոտընդիրին:

— Դեպի Կշեսինսկայան պալատը,— հրամայեց ինձ իմ վարորդը:

Ես դանդաղ առաջ շարժվեցի: Գնում էի զգույշ, որպեսզի Լենինի համար հեշտ լիներ կանգնելը: Բոլորը ետ-ետ էին քաշվում ու ճանապարհ տալիս ինձ:

Եկավ Հոկտեմբերը: Սառը քամին օրորում էր ծառերը և ճյուղերի վրայից պոկում վերջին տերևները: Իսկ անձրևը դրանք կպցնում էր Սմոլնու կտուրին, պատերին, ապակիներին, ասես այդ տերևները հեղափոխական թռուցիկներ լինեին: Երկու տերև էլ կպցրեց իմ զրահին:

Մենք երեք զրահապատ մեքենա էինք: Մեր խնդիրն էր հեղափոխության թշնամիներից պաշտպանել Սմոլնին: Երբ իջնում էր մթնշաղը, մենք հերթով վառում էինք մեր լույսերը, որպեսզի պարզ երևար շրջակայքը:



Մի օր երեկոյան ականջիս հասավ հեղափոխական զինվորների հետևյալ խոսակցությունը.

— Ի՞նչ է այս զրահապատի անունը,— հարցըրեց նրանցից մեկը՝ ցույց տալով ինձ:

— Անուն չունի: Զրահապատ և ուրիշ ոչինչ,— պատասխանեց մյուսը:

— Դա չեղավ,— նորից խոսեց առաջինը,— ամեն մի զրահապատ պետք է ունենա իր անունը:

Եվ նրանք սկսեցին ինձ համար անուն որոնել:

— Եկեք նրա անունը դնենք «Կապիտալի թըշնամի»: Թող այդ անունից սարսափեն բուրժույներն ու կալվածատերերը:

Համաձայնեցին: Ինձ նույնպես դուր եկավ այդ անունը:

Հետևյալ օրը վաղ առավոտյան ինձ մոտ եկավ իմ վարորդը և աջ կողքիս կարմիր ներկով գրեց. «Կապիտալի թշնամի»:

Շատ չանցած՝ հրաման ստացվեց հարձակվել Ձմեռային պալատի վրա: Դա Լենինի հրամանն էր:

Եվ ահա ես կանգնած եմ Մորսկոյ փողոցի կամարներից մեկի տակ ու սպասում եմ: Մոտորս աշխատում է, բայց չի ուզում, որ անիվներս պտտվեն: Արգելակների գործը դժվար է. բունգքի նման սեղմված են և ինձ չեն թողնում առաջ գնալ. դեռ ժամանակը չէ, ազդանշան չի եղել: Կողքիս շա՜տ-շատ նավաստիներ կան կանգնած: Քամին խաղում է նրանց անհովար գլխարկների ժապավենների հետ: Նավաստիները զինված են հրացաններով: Նրանք նույնպես չեն շտապում:

— Ե՞րբ ենք հարձակվելու:

— Շուտո՛վ, շուտո՛վ:

Դիմացը՝ խավար մշուշի մեջ թաղվել է Ձմեռային պալատը: Այնտեղ նիստ է անում ժամանակավոր կառավարությունը: Պալատի առաջ փայտեր են դարսված, որոնց հետևում թաքնված են Ձմեռային պալատի պաշտպանները՝ յունկերները: Նրանք նույնպես հրացան և գնդացիր ունեն:

Ես տեղիցս չեմ շարժվում, բայց մոտորը հանգցնել չի կարելի. ուր որ է կլինի ազդանշանը: Մթան մեջ առկայծում են սիգարների կարմիր կրակները: Նավաստիները ծխում են: Նրանց են մոտենում Պուտիլովյան գործարանի բանվորները, բոլորն էլ՝ զինված և կարմիր թևկապերով:

Ամբողջ փողոցը լիքն է հրացանավոր մարդկանցով:

Եվ հանկարծ գիշերային լռության մեջ լսվեց մի կրակոց: Դա «Ավրորայի» հրամազարկն էր, հեղափոխության ազդանշանը: Հրապարակով մեկ անմիջապես տարածվեց նավաստիների մարտական «ուռա»-ն, ասես համազարկի արձագանքը լիներ:

Այդ ժամանակ նոր միայն ազատ արձակվեցին իմ արգելակները և ես առաջ սլացա դեպի Ձմեռային պալատը: Ես մոռացել էի, որ հագիս ծանր զրահ կա և թռչում էի մարդատար թեթև ավտոմեքենայի նման: Գնդացիրները որոտում էին ամբողջ ուժով: Իմ հետևից, սվինները առաջ մեկնած, կուզեկուզ վազում էին բանվորները, զինվորներն ու նավաստիները և միաժամանակ կրակում:

Յունկերները նույնպես կրակ բաց՚արին: Բանվորներից ու նավաստիներից մի քանիսը ընկան, Բայց մենք ընդհուպ մոտեցանք յունկերներին: Սրանք գցեցին հրացանները և խուճապահար փախան: Հրապարակի վրա սկսեցին վետվետալ լուսարձակների շողասյուները: Փողփողում էին

կարմիր դրոշները։ Չէր դադարում որոտընդոստ «ուռա»-ն։

Անձրևը դադարել էր արդեն։ Միայն թե գետինը դեռ թաց էր։ Քամին քշում էր ամպերի վերջին ծվենները։ Նևայից փչում էր թարմաշունչ մի հով։ Բացվում էր սովետական իշխանության առաջին առավոտը։ Առաջին առավոտը Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո։

Իսկ երբ հեղափոխական Պիտերի վրա շարժվեցին գեներալ Յուդենիչի զորքերը, ես արդեն կարմիր բանակի շարքերում էի։ Երկար ճանապարհներից հոգնած ու փոշոտված՝ ես հասա Պուտիլովյան բարձունքը, որտեղ թեժ մարտեր էին գնում։ Ես իսկույն նկատեցի թշնամու շղթան, որն ավելի ու ավելի էր մոտենում մեր դիրքերին։ Թվում էր, թե նրանք հիմա ճեղքելու են մեր դիրքերը։ Նրանց տեսքը շատ ինքնավստահ էր։ Երբ սպիտակները բոլորովին մոտ էին մեր դիրքերին, հրամանատարն ինձ ասաց.

— Դե քեզ տեսնեմ։

Ես առաջ նետվեցի՝ գործի գցելով գնդացիրներս։ Ինձ տեսնելուն պես սպիտակները կանգնեցին։ Մեկը փորձեց կրակել, բայց գնդակները ոչինչ չկարողացան անել. իմ զրահը շատ էր ամուր։ Մեր դիրքերից կրակել սկսեցին և երկու գնդացիր։ Եվ այդ գնդացրային նվագախմբի որոտի տակ սպիտակները ետ դարձան ու փախան։ Մի քանիսը ընկան գետնին ու այլևս վեր չելան։ Ես ընկա փախչողների հետևից։ Թող իմանան, թե ինչ է նշանակում գործ ունենալ հեղափոխության երկաթե զինվորի հետ։

Ասում են, որ իմ մասին պատմել էին Վլադիմիր Իլյիչին և նա շատ էր ուրախացել, որ իր հին ծանոթը այդպիսի քաջ զինվոր է։

Վերջացավ քաղաքացիական պատերազմը։ Կարմիրբանակայինները հանեցին զինվորական շորերը և նորից դարձան բանվոր ու գյուղացի։ Բայց ես մնացի որպես զինվոր։ Ինձ հանձնարարեցին վարժեցնել ապագա մարտիկներին։ Ես թողեցի Պիտերը և ուղևորվեցի Սոսնովկա կայարանը։ Դեռ չէի հասցրել տեղավորվել ճամբարում, երբ զինվորական համազգեստով մի խումբ պատանիներ լցվեցին ներսս և սկսեցին քանդել ու հավաքել գնդացիրները։ Եվ ես հաճույքով բաց էի անում դռներս նրանց առաջ։ Միայն ափսոսում էի, որ չեմ կարողանում նրանց պատմել, թե ինչպես եմ դիմավորել Լենինին, ինչպես եմ գոռհել Ձմեռային պալատի վրա և կռվել Յուդենիչի դեմ։

Անցան տարիներ։ Զինվորական համազգեստով պատանիները շուտ-շուտ փոփոխվում էին։ Մի խումբը գնում, մյուսն էր գալիս։ Եվ ես ինչքան կարող էի, օգնում էի նրանց, որ սովորեն, թե ինչպես պիտի պտտել ղեկը, ինչպես աշխատեցնել գնդացիրները։

Հետո ես բոլորովին ծերացա։ Մոտորս ուժասպառ եղավ, ու ես առաջվա նման չէի կարող տեղից շարժել իմ ծանր զրահը։ Զսպանակներս արդեն ճռճռում էին, և ինձ թվում էր, թե ուր որ է հիմա կջարդվեն։ Երբ որ Սոսնովկայում երևաց առաջին տանկը, ինձ անուշադրության մատնեցին։ Այլևս ոչ ոք ինձ չէր մոտենում։ Միայն տեղացի երեխաներն էին հետս խաղում։ Ու ինձ թվաց, որ բոլորն էլ մոռացել են ինձ։

Բայց ես սխալվեցի։ Հեղափոխության զինվորները իմ մասին հաճախ էին պատմում երիտասարդներին։ Մի անգամ երիտասարդ բանվորները հարցրել էին իմ նախկին հրամանատարին.

— Իսկ հիմա որտե՞ղ է այդ հռչակավոր զրահապատը։

— Չգիտեմ,— ուսերն էր թոթվել իմ հրամանատարը։

Եվ ամբողջ երկրով մեկ նրանք սկսեցին որոնել ինձ։ Որոնեցին ու գտան։ Ա։յա բուքսիրով ինձ տեղափոխեցին Լենինգրադ և ուղիղ տարան ավտովերանորոգման արհեստանոց։ Բանվորներն ու մեխանիկները սրբեցին իմ վրայի ժանգը և ներկեցին։ Ես բոլորովին ջահելացա։ Բայց ինձ այլևս բանակ չտարան։ Կանգնեցրին Մարմարե պալատի առաջ, որտեղ գտնվում է Լենինի թանգարանը։



*Հետո սկսվեց Հայրենական պատերազմը։ Ես համոզված էի, որ ինձ նույնպես կուղարկեն կռվելու։ Բայց ռազմաճակատ ուղարկելու փոխարեն ինձ իջեցրին թանգարանի խոր ներքնահարկը։*

*— Հիմա կռվելու են հզոր տանկերն ու ինքնաթիռները,— ասացին ինձ։*

*Եվ ես մնացի ներքնահարկում։ Բայց լենինգրադցիները չէին հավատում, որ ես գտնվում եմ թաքստոցում։ Նրանք նկատել էին, որ ես սովորական տեղումս չեմ, և կարծել էին, թե կռվում եմ ֆաշիստների դեմ։ Իմ մասին սկսել էին զանազան լեգենդներ պատմել, թե որտեղ էին ինձ տեսել կռվելիս։*

*Ես լսում էի արկերի պայթյունն ու ռումբերի որոտը։ Շենքի պատերը դողում էին։ Բայց չէի վախենում։ Ես հավատացած էի, որ ոչ մի տեսակի արկ չի կարող ընկնել սովետական ժողովրդին։*

*Հիմա ես դարձյալ կանգնած եմ իմ տեղում։ Ես մենակություն չեմ զգում, որովհետև ինձանից ոչ այնքան հեռու կանգնած է «Ավրորա» հածանավը, իմ մարտական հին ընկերը։ Նրա համար ես «լեգենդար անձնավորություն» չեմ, այլ պարզապես զրահապատ մեքենա «Կապիտալի թշնամի», որ զինված է «Մաքսիմ» տիպի երկու գնդացիրով։ Մենք հուշարձաններ չենք, այլ հավիտենական ժամապահներ։ Մենք հսկում ենք, որ հավերժ լինի սովետների իշխանությունը, Լենինի գործը, Հոկտեմբերի փառքը։*

**Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ**



11-րդ բանակի մուտքը Երևան

# ՀԱՅՐԵՐԻ ԵՎ ՊԱՊԵՐԻ ԵՐԹՈՒՂՈՎ

Նրանք գնում էին օր ու գիշեր, լեռնային ոլորապտույտ ճանապարհով։ Գնում էին, համարյա առանց հանգստի, աշխատելով չկորցնել ոչ մի րոպե։

Պետք էր շուտ Երևան հասնել։ Այդ միտքը հանգիստ չէր տալիս քաղցից ու անքնությունից հյուծված, ճմռթված շինելներով, սրածայր կոմունարկաներով այդ մարդկանց։

Ձիավորները, ձեռքերին ունեին նիզակներ, որոնց ծայրերին ամրացված փողփողում էին կարմիր դրոշներ։ Հետևակը գնում էր շարասյուներով, իսկ հրետանավորները, գրեթե վազում էին ձիաքարշ հրանոթների հետևից։

1920 թվականի աշնանն էր։ Տասնմեկերորդ կարմիր բանակի զորամասերը, որոնց ուղարկել էր Լենինը, շտապում էին դաշնակների տիրապետության դեմ ապստամբած հայ ժողովրդին օգնելու համար։ Անցնելով Հայաստանը Ադրբեջանից բաժանող սահմանը, Աղստեֆ գետի Մուռ կամուրջի վրայով, նրանք դժվարին մի երթ էին սկսել դեպի Հայաստանի խորքը։

Հեշտ չէր կարմիր զորամասերի ուղին, որն անցնում էր Հայաստանի ավերված գյուղերի և ամայացած քաղաքների միջով։ Ամենուրեք զգացվում էր սով և քայքայում։ Թշնամին անձնատուր չէր լինում։ Հաճախ բարձրաբերձ քարափների և ծերպերի կատարներից գնդացրային կարկուտ էր տեղում անցնող զորամասերի վրա։ Կիրճերում թշնամին դարան էր սարքում։ Այդպիսի պահերին կարմիրբանակայիններն իսկույն մարտական դիրքեր էին գրավում և հակահարված տալիս թշնամուն։

Այսպես քայլ առ քայլ 11-րդ բանակը մոտենում էր Երևանին՝ կյանք և ազատություն բերելով նրան։

Անցել է քառասունհինգ տարի։ Եվ այդ առասպելական երթի մասին այսօրվա դպրոցականներն իմանում են միայն դասագրքերից և կինոֆիլմերից, հին լուսանկարներից և ականատեսների պատմածներից։

Եվ ամեն անգամ այդպիսի զրույցներ լսելիս երեխաները երազել են՝ ի՜նչ կլինի եթե մենք այժմ կրկնենք 11-րդ բանակի պատմական արշավը տուրիստական շարասյուներով։

և Հայկական ՍՍՀ Լուսավորության մինիստրության պատանի տուրիստների հանրապետական կայանը որոշեց օգնել իրագործելու երեխաների երազանքը:

Պիոներ-դպրոցականների հանրապետական 5-րդ արշավախմբի շտաբի հերթական նիստում, որը նվիրված էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին, տուրիստական կայանի առաջարկությունը ընդունվեց: Որոշեցին 11-րդ Կարմիր բանակի անցած ճանապարհներով կազմակերպել արշավ Հայաստանի դպրոցների լավագույն ուժերի մասնակցությամբ:

Այս տարվա մարտի 20-ին Իջևանի շրջանի Ուզունթալա գյուղում հավաքվել էին արշավի մասնակիցները՝ Երևանի և հանրապետության մյուս քաղաքների և շրջանների դպրոցականները: Ուզունթալայի դպրոցականները ցնծությամբ դիմավորեցին տուրիստներին: Արշավի առաջին օրը, հարազատ գյուղի ծայրամասում, այնտեղ ուր շարք էին կազմել պատանի ճանապարհորդները, Ուզունթալայի երեխաները ճանապարհի երկու կողմերին ծառեր տնկեցին: Մի քանի տարի հետո այդ ծառերը կմեծանան և կկազմեն կանաչ, զովասուն մի ծառուղի, որը անցորդներին միշտ կհիշեցնի



Իջևանի ճանապարհին

11-րդ Կարմիր բանակի արշավի մասին, այն արշավի, որը համարյա կես դար հետո կրկնեցին պատանի տուրիստները:

Շղթա կազմած, երկու հարյուր մետր երկարությամբ ձգված իրար հետևից, շարք-շարք քայլելով, նրանք սկսեցին դժվարին, հարյուր իննսուն կիլոմետր երկարություն ունեցող արշավը, որից հիսուն կիլոմետրը անցնում էր լեռնային դժվարին, կտրտված վայրերով: Երեխաներին հեշտ չէր անցնել լեռներով և ձորերով, անհրաժեշտ իրերով լցված ճամփորդական պարկերը շալակած: Երբեմն էլ նրանց գլխին առատ ձյուն էր տեղում: Բայց երեխաները չհուսահատվեցին: Չէ՞ որ կարմիրբանակայինները ավելի մեծ դժվարություններ էին հաղթահարում և երբեք չէին վհատվում:



Արշավի մասնակիցների մեջ քիչ չէին աղջիկները, որոնք տղաների նման ծանրաբեռնված էին, բայց տղաներն օգնում էին ցածր դասարանների աղջիկներին՝ տանելու իրենց ծանր բեռը: Երևանի պիոներների պալատի պատանի տուրիստների խմբի մեջ անվախ քայլում էր Շահումյանի անվան դպրոցի աշակերտուհի Գոհարիկ Սահակյանը: Նա խմբի թղթակիցն էր և պահում էր օրագիր, որից մենք շատ մանրամասնություններ իմացանք այդ արշավի մասին:

Հին, ցածլիկ հողաշեն տներով Քարվանսարայի փոխարեն, որի միջով 1920 թվականին անցել էին 11-րդ Կարմիր բանակի զորամասերը, երեխաները այժմ տեսան գեղեցիկ, բարեկարգ, փոքրիկ քաղաք Իջևանը՝ իր գետափնյա զբոսավայրերով ու կամուրջներով, գեղեցիկ, բարձրահարկ տներով, ֆաբրիկաներով և գործարաններով: Անճանաչելիորեն փոխվել է Դիլիջան առողջարանը:

Գոհար Սահակյանի օրագրերից մենք իմացանք նաև, որ պատանի տուրիստներին սրտառուչ դիմավորել են բնակիչներն այն քաղաքների և գյուղերի, որոնց միջով անցնում էր տուրիստական երթուղին: Արշավի մասնակիցները քնում էին դպրոցական շենքերում, մաքուր օդում, վրանների տակ: Նրանք ծանոթանում էին թանգարաններին ու ցուցահանդեսներին, զրուցում այն հին հեղափոխականների հետ, որոնք մտել էին 11-րդ Կարմիր բանակի շարքերը և նրա հետ անցել մարտական ուղին: Այդ հետաքրքրական զրույցներն ամենուրեք ավարտվում էին համերգներով, որոնց մասնակցում էին և՛ պատանի հյուրերը, և՛ հյուրընկալողները:

Արշավի մասնակիցները կիլոմետր-կիլոմետրի հետևից անցնելով մոտենում էին Հայաստանի մայրաքաղաքին: Վերջապես երևաց Քանաքեռի սարահարթը: Այստեղ հիմնական շարասյանը, որը գլխավորում էր Լենինականի № 23 դպրոցի դասատու Դերիկ Մաթևոսյանը, միացավ ստեփանավանցիների ջոկատը: Ստեփանավանի Պուշկինի անվան

*Իջևանից եկող խմբի ղեկավար Վոլոդյա Ջիլավյանը զեկուցում է Սովետական Միության հերոս գեներալ Մարտիրոսյանին, արշավի հաջող ավարտման մասին ՎԼԿԵՄ-ի բակում:*

դպրոցի 22 աշակերտները իրենց դասատու Վոլոդյա Ջիլավյանի ղեկավարությամբ գնացել էին Դիլիջան-Կիրովական-Ապարան-Աշտարակ-Էջմիածին-Երևան երթուղիով, այսինքն այն ճանապարհով, որով անցել էր կարմիրբանակայինների ջոկատը:

Արշավի մասնակիցների հավաքական շարասյանը միացան նաև ինը պատանի տուրիստներ: Նրանք Երևանի № 89 դպրոցի դասատու Վոլոդյա Գրիգորյանի ղեկավարությամբ կրկնել էին կարմիրբանակայինների մեկ ուրիշ՝ Սիսիան-Եղեգնաձոր-Վեդի-Արտաշատ-Երևան մարտական ուղին: Հավաքական շարասյունը, բաղկացած 120 պատանի տուրիստներից, մարտի 20-ին անցնելով Քանաքեռի կանաչապատ փողոցներով, ուղղորվեց դեպի հանրապետական տուրիստական կայանը: Շարասյան առջևից քայլում էին լենինականցի դպրոցականները, բարձր պահած № 23 դպրոցի արշավախմբի մարտական, ծածանվող դրոշը: Դրոշակի կողքից սպորտային հրացաններով գնում էին դրոշակակիրների ասիստենտներ Միշա Կարապետյանը և Ստեփան Քյուրքչյանը:

Ոգևորված արշավի մասնակիցները խրոխտ քայլերով մտնում են մանկական տուրիստական կայանի բակը: Այստեղ նրանց դիմավորում է Մոսկվայի պաշտպանության, Պրագայի ազատագրման և Բեռլինի գրավման ակտիվ մասնակիցներից մեկը՝ Սովետական Միության հերոս, պահեստի գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանը:

**Ն. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

*Պիոներ-դպրոցականների 3-րդ հանրապետական արշավախմբի շտաբի անդամ*

# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Մուժ է իջել սև քարափին,
Էլ մարդ չկա սարի ճամփին,
Սերկ դաշտերն են նայում ամպին,
Որ լուռ ձյուն տեղա,
Շուտով ձյունը կիջնի անտես,
Դու սահնակդ պիտի հանես,
Ուրախացած փողոց տանես,
Իմ փոքրիկ տղա:

Խաղաս պիտի, ուրախ երգես,
Նոր սահարան ձյունով սարքես,
Իր պաղ շնչով ձմեռը քեզ
Պիտի համբուրի,
Լռության մեջ երանավետ
Սառելու է գետակը խեղճ,
Որ քուն մտնի ձկների հետ
Սառցի տակ բարի:

Օրոր կասի ձյունն արտերին,
Որպես ընկեր մի մտերիմ
Հաց պիտի տաս դու ծտերին,
Որ ապրեն նրանք,
Նրանք երբեք, փոքրիկ տղա,
Բարությունդ չեն ուրանա,
Երգեր կասեն ճամփիդ վրա,
Երբ գարուն գա տաք:

Շուտով կերգի ձմեռը խոր
Փաթիլներով իր բյուրավոր,
Սիրիր նրա հեքիաթն անդորր,
Բայց գարունը պերճ
Մի չորացած մանուշակով,
Հոգուդ պայծառ ներշնչանքով,
Երազներիդ քայլող շարքով,
Միշտ պահիր քո մեջ:

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*



# Չորս ուղեկից կոճակ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

Ճանապարհը ձգվում էր դաշտերի ու ձորերի միջով։ Լիբոթ գետը մերթ սեղմվում էր ճամփեզրին, մերթ հեռանում, կորչում բլրակների հետևում, որոնք փակում էին հորիզոնը։

Քայլելը հաճելի էր ու թեթև։ Գըռ՛թ-գը՛ռթ, գըռ՛թ-գըռ՛թ... Մեկ, երկու, երեք, չորս... Աննկատելիորեն ռիթմի մեջ ընկան, և Արտակը սկսեց երգել ցախանոցում ծնված երգը...

Կար-չկար մի արջամո՜ւկ։
Լավ գիտեր իր բանը.
Վեց օր շաբաթն արձակուրդ,
Կիրակի էլ տա՜նն էր։

Աշոտն ու Գիտնականը խլեցին կրկներգը.

Հա՛-հա՛... Այ քեզ արջամո՜ւկ։
Լավ գիտեր իր բանը.
Վեց օր շաբաթն արձակուրդ,
Կիրակի էլ՝ տա՜նը...

Միերը չգիտեր այդ երգը։ Բայց դա նշանակություն չուներ։ Նա աշխատում էր ետ չմնալ ընկերներից ու ոտքերն այնպիսի կորիճությամբ էր շրխկացնում գետնին, որ ուղղակի հրաշք։ Իսկ չէ՞ որ դա է գլխավորը՝ քայլել երգի ռիթմով։ Եվ հետո, ախր առաջին անգամ է լսում այդ երգը, ու դեռ ժամանակ կունենա սովորելու։ Հարկավոր է միայն ուշադիր ականջ դնել... Ահա, Արտակը շարունակում է.

Գործը առաջ էր գնում,
Բայց մնում էր տեղը։
Արջամուկը գիրանում,
Սղալում էր բեղը...

Տղաներն առանց ուշացնելու ձայնակցում են.

Հա՛-հա՛... Այ քեզ արջամո՜ւկ։
Լավ գիտեր իր բանը.
Վեց օր շաբաթն արձակուրդ,
Կիրակի էլ՝ տա՜նը...

Ու նորից Արտակը.

Բայց մի օր էլ, կամացուկ,
Տեսան ինչն ինչոց է,
Երկարատև արձակուրդ
Ճամփեցին հոր ծո՜ցը...

Եվ ամբողջ խումբը թնդացրեց.

Հա՛-հա՛... Այ քեզ արջամո՜ւկ...
Տեսան ինչն ինչոց է,
Հա՛-հա՛... տվին արձակուրդ,
Ճամփեցին հոր ծոցը...

Ձորերն ու բլուրները երկար արձագանքում էին այդ ուրախ երգին։

Անցան կամուրջը, որի տակ փրփրում էր Լիբոթը, և նրանց դեմ բացվեց հյութեղ խոտով ու ծաղկունքով ծածկված մի տափարակ։ Դա խոտհարք էր։ Մի կողմում տղամարդ ու կին հարում էին խոտն ու լասերով փռում, բլրի լանջին կանաչ գոտիներ կապելով, մյուս կողմում, ուր խոտն արդեն հնձել հավաքել էին, կովի նախիրներ էին արածում, ձիու երամակներ, ոչխարի հոտեր։

Տղաները ձայն տվին խոտ հարողներին.

— Բարաջողում ձեզ։
— Բարև, հազար բարի։
— Էս ո՞ւմ խոտհարքն է։
— Երևում է, մեր կողմերից չեք։
— Չէ, ուրիշ երկրից ենք։
— Թոբիլ Թագավորինը։

Մի քիչ առաջացան, և Արտակը ձայն տվեց, ասաց.

— Էս ո՞ւմ երամակներն են։

Ասաց.

— Երևում է, որ մեր երկրից չեք։
— Չէ, ուրիշ երկրից ենք։
— Ասում եմ ախր... Թոբիլ Թագավորինը։

Մի քիչ գնացին, Աշոտը ձայն տվեց.

— Էս ո՞ւմ նախիրն է։
— Թոբիլ Թագավորինը։

Մի քիչ էլ գնացին, Գիտնականը ձայն տվեց, ասաց.

Սկիզբը՝ «Պիոներ» №№ 9, 10։

— *Բարաջողում, պապի։ Էս ո՞ւմ ոչխարն է։*

— *Բարին արեգ, բալես։ Վայ թե մեր կողմերից չես։*

— *Չէ, ուրիշ երկրից եմ։*

— *Էդ ընկերներդ է՞լ...*

— *Հա, պապի։*

— *Հլա մի դադար տվեք։*

*Տղաները կանգ առան։ Ծերունին սկսեց ցած իջնել բլրալանջով։ Նա ձախ ձեռքով բռնել էր բարակ ոտքերին ծածանվող սպիտակ վարտիքը, իսկ աջ ձեռքում մահակն էր։ Կանգ առավ ճամփեզրին, առվի այն կողմը, թմբի վրա, ուշադիր տնտղեց տղաներին. Քոթոթին էլ չմոռացավ, ապա, խոր շունչ առնելով, ասաց.*

— *Ճիշտ որ մեր կողմերից չեք։*

— *Բայց դու, պապի, այնպես էլ չասիր, թե ո՞ւմ ոչխարն ես արածացնում։*

— *Էլ ո՞ւմը պիտի, որդի. Թորիլ թագավորինը։*

— *Այս ամենը մի մարդու համար շատ չէ՞...*

*Ծերունին չպատասխանեց։ Մահակը դիմհար տալով փորին, սկսեց կուրծքը քորել։ Խորը պահված երկնագույն աչքերը ժպտում էին խորամանկ-հեգնական ժպիտով։ Ապա դարձավ տղաներին.*

— *Բա հիմի էսպես ո՞ւր եք գնում։*

— *Գնում ենք Թորիլ։*

— *Հա... Լավ եք անում։ Մենակ թե...*

— *Հը, պապի, ի՞նչ կա։*

— *Մենակ թե, ասում եմ, ի՞նչ եք կորցրել էնտեղ։*

— *Գործ ունենք։*

— *Գործ ունեք... է, ո՞վ գործ չունի։ Ես չունե՞մ, հրեն, էն խոտ հարողները, յա էն չոբանները չունե՞ն։ Բոլորս էլ ունենք, որդի, ու լավն էն է մեր գործի՞ն կենանք, չգնանք մտնենք թագավորի քիթը, ու նա էլ հերսոտի, փորձանք բերի գլխներիս... Ինչքան չլինի, թագավոր է, մարդկանց ու ու երկրի տերը։ Ձեր երկիրը թագավոր կա՞,— հանկարծ խոսքը փոխեց ծեր հովիվը։*

*Տղաները զվարթ ծիծաղեցին.*

— *Կար, պապի, բայց թախտից գցեցին։*

— *Ու լավ էլ արին։ Փառք աստծո։ Թագավորը լավ բան է, բայց առանց թագավորի ավելի լավ է։ Էլ ի՞նչ եք ուզում. էսպես ջահել, սիրուն տղերք ու թագավոր էլ չունեք...*

*Այստեղ հանկարծ Մհերը չվերցնի ու շրխկացնի.*

— *Քո էդ անպետք Թորիլ թագավորն ուզում է Դորայի հայրիկին կախել, իսկ Դորայի հայրիկը ա՛յ էսքան էլ մեղք չունի...*

*Տիրեց ճնշող լռություն...*

*Աշոտը նայում էր Մհերին սպառնալից-հանդիմանական հայացքով։*

*Գիտնականն ու Արտակը, շփոթված, գլուխները խոնարհել էին ցած։ Ինքը Մհերը չգիտեր ուր կորչի. ձեռքերը կախ էր գցել կողքերին ու աջ ոտքով գետինն էր փորփրում։ Քոթոթը նայում էր ուղիղ տիրոջ դեմքին ու պոչն էր խաղացնում։ Մինչդեռ ծերունին խորամանկորեն ժպտում էր։ Նա սկսեց նորից ուշադիր զննել տղաներին, ապա ծիծաղեց ծերունական կերկերուն ծիծաղով։ Ծիծաղում էր ու աչքերը սրբում, բայց արցունքները մի գլուխ հոսում էին. ասես երկար կուտակվել էին ներսում, և այժմ, թումբ ու պատնեշ քանդած, թափվում էին ու թափվում։ Վերջապես խոսեց.*

—*Գնում եք, ուրեմն... Կարևոր գործով։ Է, ինչ ասեմ։ Բարով գնաք, բարով գաք։ Մենակ թե զգույշ կացեք, ուրիշ տեղ էլ բերաններիցդ խոսք չթռցնեք Դորայի հոր մասին.— ու նա աչքով արավ Մհերին։*

*Չեմ թռցնի, պապի։*

— *Հա, էդպես... Դե, գնացեք։ Ինչ պիտի ասեի... Մտիցս թռավ։ Հա, էս մահակն էլ ինձանից ձեզ հիշատակ. գուցե մեկ-մեկ միտ կբերեք ծերուկիս. և մահակը մեկնեց Աշոտին։ Առ, հրամանատար... Դե, գնացեք, գնացեք,— շտապեցրեց ծերուկը ու կաղին տալով բարձրացավ դեպի բլրալանջով մեկ փռված հոտը։*

*Տղաները երկար ժամանակ աչք չէին կտրում նրանից։*



— *Լավ ծերուկ էր,— վերջապես ասաց Արտակը*

— *Տեսնես քանի՞ տարվա փայտ է,—ասես ինքն իրեն խոսեց Աշոտը։—Ուղղոտ, փայլուն... և նախշեր ունի վրան։*

*Տիգրանը վերցրեց փայտը։ Բավական ծանր էր։ Գլխամասը ծածկված էր մանր փորագրությամբ։*

— Սա, երևի, որևէ բան է նշանակում, բայց թե ի՞նչ...— և Տիգրանը ուսերը թոթվեց։

— Հապա մի ինձ տուր այդ դագանակը,— խնդրեց Արտակը։ — Այո, հը՛մ, իսկապես... Սա շատ նշանավոր չոմբախ է։ Այս ուռղերը միայն ի՜նչ արժեն, էլ չասած նախշերի մասին։ Ախր սրանք ոչ թե սովորական նախշեր են, այլ խորհրդավոր հմայություններ... Այս մահակը...

— Վերջ տուր կապկություններիդ,— խեթեց Աշոտը։

— Լսում եմ, ընկեր հրամանատար, վերջ տալ կապկություններիս։ Մհեր, վերցրու՛ այս մահակն ու սրբությամբ պահպանիր, որովհետև սա այն նշանավոր գավազանն է, որով Իվան Ահեղը ջարդեց իր որդի Իվանի գլուխը։

— Վերջ տուր։

— Ոչ ասում եմ...

Բավական ժամանակ քայլում էին, երբ հանկարծ Մհերը խզեց լռությունը.

— Ախր, էն պապիկը... ինչո՞ւ էր վարտիքը բռնել։

— Դե, ինչպես ասեմ, Մհեր,— անմիջապես արձագանքեց Արտակը, աչքով անելով մյուսներին։ Ինչպես երևում է, նա տրամադիր էր խոսելու։— Երևի խեղճի փորը լավ չէր, լուծ ուներ կամ դրա նման մի բան։ Մի խոսքով, որևէ տասներկումատնյա աղիք կամ ստոծանի կարգին վիճակում չէր... Դե, նա էլ պատրաստ բռնել էր վարտիքը, որ հարկ եղած դեպքում հասցնի իրեն գցել մոտիկ թփի տակ կամ փոսի մեջ։ Պա՞րզ է։ Ինչպե՞ս մեկնաբանեցի,— դարձավ նա Աշոտին ու Գիտնականին։

— Փայլո՛ւն...

— Գիտեմ, ախր...

— Միայն թե ես նկատեցի, որ ծերուկի վարտիքը կոճակ չուներ,— ասես ի միջի այլոց ասաց Աշոտը։

— Ի՜նչ ես ասում... Այդ դեպքում իմ մեկնաբանությունը փոքր-ինչ շտկման կարիք է զգում... Այսպես, ուրեմն, սիրելի Մհեր, այն խեղճ պապիկը պարզապես վարտիքին կոճակ չուներ... Իսկ եթե քեզ հետաքրքրում է, թե ինչու այդ դժբախտ վարտիքը կոճակ չուներ, ապա հնարավոր է երեք ենթադրություն, որոնք հավասարապես հավանական են թվում։ Առաջին՝ Թորիկյանը բավարար քանակությամբ կոճակ չի արտադրում։ Կոճակի արտադրությունն այնքան էլ հեշտ գործ չիմանաս. անհրաժեշտ է հումք, որ ամեն տեղ չի բռնում, անհրաժեշտ են՝ մեքենաներ ու հաստոցներ, անհրաժեշտ են մեծ-մեծ շենքեր, անհրաժեշտ է աշխատող ձեռք... Մի խոսքով՝ գլխացավանք։ Ուստի ավելի լավ է ուրիշ երկրից բերել տալ այդ կոճակը։ Բայց դրա համար փող է հարկավոր, սիրելիս, ոսկի, որ դու չես տեսել կամ տեսել ես, երևի, մեկնումեկի բերանում միայն իբրև ատամ կամ ատամի շապիկ։ Դեղին, պսպղուն բան է։ Ահա, ուրեմն, հարկավոր է այդ դեղին, պսպղուն բանը, որպեսզի կոճակ բերել տաս։ Բայց որտեղի՞ց։ Ոսկին նույնպես ամեն տեղ չի բռնում։ Այստեղից էլ պահանջի և առաջարկի անհավասարակշռություն. առաջարկը չի ծածկում պահանջը կամ պահանջը

# Արամիկն ու եռանկյունին



Մ. ՊԻՏԼՅԱՐՍԿԻ

Սեղանի առջև նստած վշտաբեկ,
Այդ ո՞վ է տնքում ամբողջ տնով մեկ.
Այդ Արամիկն է դասերը սերտում
Ու հետն էլ անմիտ բաներ փնթփնթում.
«Այս եռանկյունուն նայեք՝ ա — բե — գե,
Նոր գլխացավանք չէ, հապա ի՞նչ է։
Ա՜խ, չար կախարդը տաներ երանի
Ու գետը գցեր այդ եռանկյունին։
Եվ կդառնային աշխարհի բոլոր
Աշակերտները անհոգ, բախտավոր...»
Ձանձրացավ տղան, բակացավ, հուզվեց,
Մի կերպ գիտության աշխարհը սուզվեց։
Բայց... Ահա՛ երկու սարյակների պես,
Սևուկ աչքերը նրա սրատես
Խորամանկորեն պոկվելով գրքից,
Լայն բակը թռան վերևի հարկից։
Բակում բոլորը ֆուտբոլ են խաղում,
Ուռա՜ են կանչում, բարձր ծիծաղում.
«Գոլ ենք խփել, հե՜յ» — գոռում են դրսում,
Եվ Արամիկն է կլանված լսում։
«... Սա ներքնաձիգ է, սա՝ եռանկյունի»,
Սիրտը ներքև՜ է ձգում, ի՜նչ անի...
Հայրը և մայրն էլ թարսի պես տանն են,
Թե փախչել ուզի՝ իսկույն կբռնեն։
Եվ Արամիկի շփոթ ուղեղում

գերազանցում է առաջարկը։ Գնում ես խանութ կոճակ առնելու, իսկ այնտեղ կոճակ չկա։ Այս մեկ։ Այժմ անցնենք երկրորդին։ Արտադրություն կա, կոճակ կա, բայց փող չկա։ Ինչպե՞ս թե փող չկա։ Կոճակի համա՞ր։ Այո, կոճակի համար։ Կոճակը, իհարկե, թանկ չէ, չնչին կոպեկներ։ Բայց կոպեկներն էլ պետք է ունենալ։ Պատահում է, չէ՞, որ մի հինգ կոպեկ չես ունենում արևածաղկի սերմ առնելու, չնայած շատ-շատ ես ուզում չրթել, իսկ վաճառողն իր պարկի հետ թարսի նման ցցված է լինում ուղղակի ձեր պատուհանի առջև, դիմացի մայթին... Հիմի տես, թե ինչպես է լինում, որ մի քանի գրոշ չես ունենում մոտդ կոճակ առնելու համար։ Մարդ ապրելու համար պետք է ուտի, իսկ ուտելիքի համար հարկավոր է փող։ Տվիր։ Լա՜վ։ Հիմա պետք է մի բան հագնի, որպեսզի ծածկի մերկությունը, չմրսի։ Շորի համար նույնպես փող է հարկավոր։ Տվիր։ Հիմա հարկավոր է կոճակ։ Բայց պարզվում է, որ փողդ վերջացել է. ուտելիքի համար հերիքեց, հագնելիքի համար հերիքեց, իսկ, այ, կոճակի համար չհերիքեց։ Ո՞րն է կարևոր՝ վարտի՞քը, թե՞ կոճակը։ Իհարկե, վարտիքը։ Ավելի լավ է ունենալ անկոճակ վարտիք, քան անվարտիք կոճակ։ Այսպես չէ՞։ Հհա, սիրելիս, այն պապիկն էլ մեր կարծիքին էր։ Ապացույց՝ նրա անվարտիք կոճակը... Ինչ եմ ասում, անկոճակ վարտիքը։ Համոզի՞չ եմ խոսում։ Կարծում եմ։ Հը՜մ... Որտեղ կանգ առա՞նք... Այո, անկոճակ վարտիքը։ Հիմի գանք երրորդ ենթադրությանը... Ըմմմ... Բավական պարզ է և բխում է առաջին երկուսից։ Այսինքն ոչ փող կա, ոչ կոճակ։ Այդ դեպքում վարտիքը պետք է պարզապես անկոճակ լինի։ Դա, այսպես ասած, անխուսափելի հետևանք է կամ հետևանքի անխուսափելիություն... Ի՞նչ է մնում անել, երբ կոճակն ու փողը գոլորշիացել են, հօդս ցնդել։ Մնում է վերցնել վարտիքն ու հագնել ինչպես որ կա, առանց կոճակների՝ ի նշան բողոքի և համակերպության։ Պա՞րզ եմ խոսում... Կարծում եմ... Այո... Ես վերջացրի։

— Եվ լավ արիր,— ասաց Աշոտը։ — Մի տես՝ ի՞նչ ծուխ է դուրս գալիս այն շենքից։ Չլինի՞ հրդեհ է։

— Դարբնոց է,— հանգիստ նկատեց Գիտնականը։

Կիսով չափ հողում թաղված վիթխարի շինությունը առասպելական հրեշի նման ծուխ էր արտաշնչում։ Շենքի ծայրին, փոքր-ինչ մեկուսի, բարձրանում էր հովանոցաձև մի չինարի, ահագին ստվեր գցելով կանաչ խոտերին։

— Վատ չէր լինի մի քիչ հանգստանալ,— ասաց Աշոտը։

Տղաները նստոտեցին ստվերում։ Մհերն իսկույն քնեց, մահակը դնելով գլխատակին։ Քոթոթը գունդուկծիկ եկավ տիրոջ ոտքերի մոտ։ Աշոտը, Գիտնականը և Արտակը, մեջքները հենելով ծառի հաստ բնին, աչքները փակեցին։

— Դեռ երկու ժամ օր կա,— խոսեց Գիտնականը։ — Պետք է քաղաք հասնել՝ գիշերելու տեղ ճարելու համար։

— Կճարենք,— հանգիստ ասաց Արտակը։ — Շատ




Նկ. ԿԱՐԷՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մեկ դաս է, ու մեկ ֆուտբոլ են խաղում։
... Եռանկյունի ա—բե—գե...
«Հե՜յ, դատավո՛ր, դա ճիշտ չէ...»
... Պահանջում է թեորեման...
«Ո՛չ, խաղից դուրս է էմման»։
... Սա կոչվում է ներքնաձիգ...
«Վա՜յ, շապիկս պատռեցիք...»
... Եռանկյունում տրված է...
«Ահա՛ թե ինչ հարված էր...»

Իսկ առավոտյան, գրատախտակի մոտ
Կանգնել է տղան՝ գունատ ու շփոթ։
Եվ ուսուցիչն է հարց տալիս նրան.
— Ինչո՞ւ ես թթվել, դե խոսի՛ր, Արամ։
Ասա՛, այս գիծը ինչպե՞ս է կոչվում։—
Խեղճ տղան այս կողմ, այն կողմ է ճոճվում.
Կծկըվել է ու դարձել մի կծիկ։
Ու խոսում է նա ասես քնի մեջ.
—Գոլ... Ներքնա... ֆուտբոլ, ըը՜... ֆուտբոլաձիգ...—
Ծիծաղն է թնդում... Ահա՛ քեզ հարված...
Եվ Արամիկն է կանգնել մոլորված.
Զգում է ցավով, որ իր սեփական
Դարպասում գոլ է «շահել» այս անգամ։

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԸ

չեղավ՝ դրսում կքնենք։ Նույնիսկ ավելի լավ է. կդիտենք աստղերը։

— Այո, իհարկե,— ընդհատեց Աշոտը.— Հենց դրա համար էլ եկել ենք Թոքիլատան...

— Ամեն տեղ էլ աստղերը հետաքրքիր են։ Ես կարող եմ...

— Դու ուրիշ բան ես, Արտակ։

— Համաձայն եմ։

Լռեցին։

Քոթոթը քնի մեջ էլ հանգիստ չէր. մերթ պոչն էր ցնցում, մերթ՝ ականջները։ Մեկ էլ աչքերը բացեց, ախորժակով ծմրկոտաց ու ատամները չրխկացրեց, քունն առավ։ Այսպես է Քոթոթը. մեկ, երկու, և նորից ոտքի վրա է։ Այժմ պետք է խաղալ։ Դրա համար խաղընկեր է հարկավոր։ Եթե Մհերը արթուն լիներ... Բայց նա քնած է, և Քոթոթը լավ գիտի, որ չի կարելի տիրոջն արթնացնել։ Այդ մեծ տղաներն էլ շատ են լուրջ և իսկի հարմար խաղընկեր չեն։ Ի՞նչ անի։ Զգնա՞ ու աչք ածի շենքի ներսը։ Միգուցե որևէ շնիկ լինի այնտեղ, կատու կամ փոքրիկ աղջիկ, որ խիստ կասկածելի է։ Շենքի դուռը բաց է ու այնտեղից այնպիսի թանձր ծուխ է դուրս գալիս, որ կարելի է խեղդվել։ Հազիվ թե ներսը որևէ շունչ կենդանի լինի։ Ոչ որ այդպիսի ծխին չի դիմանա։ Բայց և այնպես մի անգամ կարելի է...

Քոթոթն անաղմուկ շարժվեց դեպի դարբնոց, կանգ առավ դռան առաջ։ Ներսը մո՜ւթ-մո՜ւթ էր ու ոչինչ չէր երևում։ Ծուխը լցվեց քիթը, և նա սկսեց հազալ, կլանչել, նույնիսկ աչքերից արցունքներ հոսեցին։ Այ թե դաժան է այդ ծուխը։ Կոկորդը քերվում է։ Թո՜ւհ, ուղղակի կարելի է խեղդվել։ Քոթոթը հեռացավ այնքան, որ ծուխն իրեն չհասներ։ Այժմ կարելի էր հանգիստ զննել ներսը, բայց ոչինչ չէր երևում։ Մո՜ւթ-մութ էր։ Սպասիր, այն ի՞նչ կարմիր բան է խորքում։ Կրակ է, երևի։ Դե, իհարկե։ Ախր հենց այդպիսի մի կրակ էլ Արտակենց ցախանոցում կար։ Եվ ճիշտ նույնպիսի էլ չխկոց-թխկոց է լսվում ներսից։ Տեսնես ի՞նչ են ծեծում... Ուրեմն, այնտեղ մարդ կա։ Ո՞նց է, որ չի խեղդվում։

(Շարունակելի)



# ԹԱՆԿԱԳԻՆ «ԹԵՐԹԻԿԸ»



Պ. ՄԻՏԻՆ

— Սա արդեն բանի նման չէ։ Դուք նորից չեք վճարում բնակարանի վարձը,— շնչահեղձ լինելով ասաց գեր տանտերը, որ դժվարությամբ բարձրացել էր Բեթհովենի սենյակը տանող ոլորապտույտ աստիճաններով։

Կոմպոզիտորը կանգնել էր պատուհանի մոտ։ Նա մեղավոր ժպտում էր, չիմանալով, ինչպես ներողություն խնդրել, որ նորից փող չունի։

— Մի անհանգստացեք։ Կարծում եմ, ես շուտով փող կունենամ և կվճարեմ բոլոր պարտքերս,— ասաց կոմպոզիտորը։

— Դուք միշտ այդպես եք ասում, իսկ ինձ փող է պետք։ Արագացրեք խնդրեմ։

Տանտերը բարկացած, ֆսֆսացնելով դուրս եկավ սենյակից։ Զանգած մեկ րոպե, դուռը թակեցին։ Ներս մտավ նրբագեղ հագնված, ցիլինդրով և ձեռնափայտով մի տղամարդ։

— Ա՜, այդ դո՞ւ ես, բարեկամս, Ամենդա,— բացականչեց Բեթհովենը,— նստեցեք։

Նա մատնացույց արեց դաշնամուրի առջև դրված միակ աթոռը, որի վրա սովորաբար ինքն էր նստում, նվագում և ստեղծագործում։

— Ո՞վ էր այդ կատաղած մարդը, որին հենց նոր հանդիպեցի աստիճանների վրա,— հարցրեց Ամենդան։

— Նա... իմ տանտերն է։ Պահանջում է բնակարանի վարձը, իսկ ես ոչ մի կոպեկ չունեմ։ Որտեղի՞ց վերցնել փող,— ուսերը թոթվեց կոմպոզիտորը և նայեց պատուհանից դուրս։

Փողոցից լսվում է մանուկների ծիծաղը։

Ամենդան մոտեցավ դաշնամուրին, մի մատով

*նվագեց «Վշտի և ուրախության ժամ» թեման և ապա ասաց.*

*— Ահա՛, այստեղից։*

*— Ի՞նչը։*

*— Ախ, բարեկամս, մի՞թե դուք ինձ չեք հասկանում։ Նստեք և մշակեք այս թեման։ Ես կվերադառնամ երեք ժամից հետո, և սա պետք է պատրաստ լինի։ Դուք փող կունենաք և կվճարեք բնակարանի վարձը։*

*Նա գնաց։ Բեթհովենը մի քանի րոպե անշարժ կանգնեց, հետո նստեց դաշնամուրի առջև։ Երեք ժամ հետո, երբ Ամենդան վերադարձավ, կոմպոզիտորը նրան մեկնեց գրված թերթը և ասաց.*

*— Ահա, վերցրեք...*

*Ամենդան իջավ ներքև, տանտիրոջ մոտ և նրան տվեց նոտագրված թերթը։*

*— Սա ի՞նչ է,— մռայլ հարցրեց նա։*

*— Իմ ընկեր Բեթհովենը ձեզ պետք է վճարի բնակարանի համար. ճի՞շտ է։ Վերցրեք ահա այս նոտաները, տարեք երաժշտական հրատարակչություն և վաճառեք նրանց։*

*— Դուք կատակո՞ւմ եք,— բարկացավ տանտերը,— դրա համար մի պֆենինգ էլ չեն տա։ Ինձ փող է հարկավոր և ոչ թե նոտայի թուղթ։*

*— Գնացեք և փորձեք, կարծում եմ դուք գոհ կմնաք։*

*Ամենդան համոզեց տանտիրոջը, և նա գնաց հրատարակչություն։*

*Հետևյալ օրը, Ամենդան նորից եկավ Բեթհովենի մոտ։ Երբ նա բարձրանում էր աստիճաններով, դռներից մեկը բացվեց և երևաց տանտիրոջ ժպտացող դեմքը։*

*— Պարո՛ն,— բացականչեց նա,— նրա մոտ այդպիսի թերթեր էլ չկա՞ն։ Ես ավելի կգնահատեի դրանք, քան բնակարանի վարձը։*

*Թարգմ. Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆԸ*




Դիտելով բնությունը, մենք նրա մեջ տեսնում ենք ամեհի այնպիսի ուժեր, որոնք դեռ մինչև օրս մնում են մարդու կողմից անսանձահարելի։ Մենք անկարող ենք կանխել հրաբուխների առաջացումը, անկոր ենք կանխագուշակել երկրաշարժերի երևան գալու ժամանակը, և միշտ չէ, որ կարող ենք խուսափել մրրկվող ծովի և կամ թե սոսկալի ջրհեղեղների ավերիչ ազդեցությունից։

Բնության ահեղ այդ ուժերի թվում մեծ քիչ դժբախտություններ չեն պատճառում նույնպես ուժեղ քամիները, որոնք ձևավորվում են որպես փոթորիկներ և երբեմն ունենում են ժամում 150—200 կմ. արագություն։

Ճիշտ է, ներկայումս մենք գիտենք նրանց առաջացման պատճառները, ուստի հաճախ վաղօրոք կարողանում ենք ապահովել մեր կյանքը և պահպանել մարդկային բնակավայրերը տարերային այդ երևույթների ավերիչ գործունեությունից. առանձին դեպքերում նույնիսկ փորձում ենք պայքարել բնության այդ տարերքի դեմ, բայց շատ անգամ, երբ քամու արագությունը հասնում է արտասովոր մեծության, նա կարողանում է ոչ միայն արմատահան անել ծառերը, ավերել ծխնելույզները, պոկել տների ծածկը, այլև ոչընչացնել քարաշեն կառուցվածքներ, գյուղեր, քաղաքներ և օդով տանել ավերած շինությունների բեկորներ, մարդիկ ու կենդանիներ։

Մրրկային այդ քամիները ամենից հաճախ դիտվում են արևադարձային երկրներում, որտեղ նրանք մարդկության համար ներկայացնում են մշտական չարիք։ Այստեղ ուժեղ փոթորիկների ժամանակ եղել են դեպքեր, երբ հիմնահատակ քանդվել են ամբողջական գյուղեր ու քաղաքներ։ Այսպես, օրինակ՝ 1780 թվ. ուժեղ փոթորկի հետևանքով Կենտրոնական Ամերիկայում Բարբադոս և մի քանի այլ կղզիներում հիմնովին ոչնչացան փոթորկին հանդիպած բոլոր տներն ու կառույցները, ամբողջովին խորտակվեց այդտեղ բակավորված անգլիական նավատորմը, ըստ որում միայն Մարտինկա կղզում ծովի տակն անցան ֆրանսիական 40 տրանսպորտային նավեր և հազարավոր մարդիկ։

Առանձնապես վտանգավոր են

արևադարձային պտուտահողմերը, որոնք անապատային մակերևույթի վրա վեր են բարձրացնում ավազի վիթխարի կանգվածներ և պտտվելով մեծ արագությամբ ոչնչացնում հանդիպած ամբողջ բնակատեղեր։ Մրրկային այս քամիների ժամանակ խիստ թուլանում է արեգակի լույսը, մեծանում խավարը և սպառնալից ավազահողմը իր ծածկի տակ է առնում օազիսներ, ամբողջ քարավաններ։ Հին տարեգրություններից իմանում ենք, որ մեր թվարկությունից դեռ 500 տարի առաջ, պարսկական 50 հազարանոց զորքաբանակը, որն անցնում էր Սահարայով, հանդիպում է ավազային կործանիչ մրրկի և ամբողջովին ոչնչանում ավազի ծածկի տակ։

Ուժեղ փոթորիկները մեծ մասամբ ծնվում են արևադարձային գոտու ցիկլոններից։ Այդ լինում է, սովորաբար այն ժամանակ, երբ մի տեղի օդը ուժեղ տաքանալով բարձրանում է վեր, իսկ նրա տեղը ճնշումը պակասելու հետևանքով ամեն կողմից սլանում են խիտ օդային կանգվածները։

Ցիկլոնային բնույթի ուժեղ մրրիկներով աչքի են ընկնում հատկապես Խաղաղ օվկիանոսյան, Չինական, Հարավ-ճապոնական, ինչպես նաև Ֆիլիպինյան կղզիների ափերը։ Քիչ չեն պատահում, երբ մեծ ուժի հասած ցիկլոնային այդ քամիները ծովից շարժվում են ցամաք և կատարում մեծ ավերածություններ։ Ըստ որում 1922 թ. այդպիսի քամիների ազդեցության տակ ափ շպրտված մակընթացության ալիքից միանգամից կոտորվեց մոտ 200.000 մարդ։

Արտասովոր ուժի մրրկային այդ քամիները աշխարհի տարբեր մասերում կոչվում են տարբեր անուններով։ Սահարայում արաբական արտահայտությամբ դրանք կոչվում են սամում։ Իրենց բնույթով սրանք չոր ու տաք քամիներ են, որոնք սովորաբար երևան են գալիս մեծ մասամբ ապրիլից-հունիս ընկած ժամանակաշրջանում։

Ամերիկայում ուժեղ քամիները կոչվում են տորնադո, երբեմն նրանց անվանում են նաև ուրագան։ Խաղաղ օվկիանոսի արևմտյան երկրներում՝ ճապոնիայում, Չինաստանում և այլն, ցիկլոնային բնույթի փոթորիկները, որոնք սովորաբար ուղեկցվում են տեղատարափ անձրևներով, կոչվում են թայֆուններ։

*ԿԻՐԱԿՈՍ ՕՀԱՆՅԱՆ*

*Աշխարհագրական գիտությունների թեկնածու*

# ՀԵՂԻՆԱԿՆ ՈՒ ԱՆՄԱՀ ՀԵՐՈՍԸ

*— Ո՛չ, կյանքը շռայլ չի եղել իմ նկատմամբ,— դառնությամբ շշնջաց Դանիել Դեֆոն։ — Ես երազել եմ հարստություն, հետաքրքիր արկածներով լեցուն կյանք, բայց ահա, արդեն վաթսուն տարեկան եմ և ինչի՞ եմ հասել։*

*Նա մտքերի մեջ ընկավ... հիշողություննե՜ր, հիշողություննե՜ր... Ամեն ինչ անցավ։ Հետաքրքիր ու բուռն կյանքով ապրեց, բազմաթիվ մասնագիտություններ փոխեց, հրապուրվեց և՛ առևտրով, և՛ քաղաքականությամբ, և՛ գրականությամբ։ Եվ այդ բոլորն էլ անթիվ անախորժություններ բերեցին իրեն։*

*— Իրականում իմ կյանքն էլ մի արկած չի՞ եղել արդյոք։*

*Նա հիշեց հեռու անցյալը, երբ առևտրով զբաղված հայրը երազում էր, որ որդին հոգևորական դառնա։ «Ես պաստո՞ր։ Ծիծաղելի է»։ Բայց և այնպես նրան ստիպեցին ընդունվել Նեվինգտոն Գրինի փոքրիկ քաղաքի հոգևոր դպրոցը։ Նա պաստոր չդարձավ, այլ հոր մահից հետո, հարստանալու տենչով, փոխադրվեց Լոնդոն և Սիտի փողոցի վրա արդուզարդի ու գործվածքեղենի խանութ բաց արեց։ Անցնում էին տարիները...։ Ամեն միջոցի դիմեց, հրաշք հարստության հույսով, իր բախտը փորձեց առևտրի տարբեր ձևերում։ Սակայն ապարդյուն, գործերը լավ չէին ընթանում։ Առևտրով զբաղվելը իր բանը չէր։*

*Ո՞րն էր իր կոչումը, մտածում էր նա։ Դեռ պատանի հասակից սիրում էր գրել։ Քաղաքական իրադրությունները, հասարակական կյանքը, վերնախավի սովորույթներն ու բարքերը, շատ էին հետաքրքրում նրան. հիվանդագին կերպով էր ընդունում ամեն մի անարդարություն։ Իր մտքերը ժողովրդի հետ փոխանակելու նպատակով, որոշեց թերթ հրատարակել. թերթը կոչվում էր «Շաբաթվա տեսություն», որի կոչումն էլ, իհարկե, հենց այդ էր։*

*Այնպիսի՜ հաճույքով էր նա բարձրաստիճան չինովնիկներին հեգնող պամֆլետներ հորինում, ծաղրում բթամիտ ու սահմանափակ ազնվականությանը... Նա սուր էպիգրամներ, ֆելիետոններ, հոդվածներ էր գրում կրոնի, բարոյականության, քաղաքական հարցերի վերաբերյալ։ Մի անգամ նրա խանութը ներխուժեցին մինչև ատամները զինված զինվորներ.*

*Համաձայն օրենքի...*

*Դանիել Դեֆոյին ձերբակալեցին և դատեցին «Ամենակարճ ճանապարհը...» պամֆլետի համար, որտեղ նա ծաղրի էր ենթարկել բարձրաստիճան որոշ ազնվականների։*

*Ի՜նչ խայտառակություն։ Դանիել Դեֆոյին տարան քաղաքային հրապարակ և ամբոխի աչքի*

առաջ կապեցին անարգանքի սյունին։ Նա սեղմեց ատամները ու փակեց աչքերը. նրա հոգին զայրույթով և ատելությամբ էր լցվել ամենակարող ազնվականների դեմ։ Նա հազիվ էր իրեն զսպում, որ դրանց գլխին չպայթեցներ իր զայրույթն ու նզովքը։

Բայց այս ի՞նչ ամբոխ է, որ շրջապատել է սյունը։ Սովորաբար ամբոխը ծաղրուծանակի է ենթարկում մեղապարտին։ Սակայն այժմ նա տեսնում էր իր շուրջը փայլող աչքեր ու բարձրացած ձեռքերի մի ամբողջ անտառ և լսում նրանց ոգևորված բացականչությունները։

Կեցցե՛ Դանիել Դեֆոն։ Ողջո՛ւյն քեզ, Դանիել։ Դու արդար ես։ Փա՜ռք Դեֆոյին։

Եվ ահա, պահակախմբին հրմշտելով իրեն են մոտենում տղամարդիկ և կանայք։ Նրանք ծաղիկներով են զարդարում անարգանքի սյունը։ Արցունքի քող է իջնում Դանիել Դեֆոյի աչքերին։ Ո՛չ, նա երբեք չի հեռանա իր ժողովրդից, որն այդպես ջերմորեն է ողջունում իրեն, նա չի դավաճանի իր մերկացնող գրչին...

Ի վերջո, նրան տանում են մռայլ ու խոնավ բանտախուցը։ Ամբողջ օրը նա ստանում էր մի կտոր սև հաց և ջուր։

Ազատվելով բանտից, Դեֆոն դարձյալ վերցնում է գրիչը, որպեսզի էպիգրամներ, ֆելիետոններ, քաղաքական հոդվածներ գրի։ Ժողովուրդը սիրում ու հասկանում է իրեն, նրա արդարամտությունն ու դիպուկ խոսքերը ժողովրդի հոգուց են բխում։

Այժմ ինքն արդեն ոչ թե սնանկացած վաճառական է, այլ հայտնի լրագրող, «Շաբաթվա տեսության» խմբագիր, կենդանի, հրատապ և համարձակ հոդվածների, պատմվածքների, էպիգրամների հեղինակ...

Անցնում են տարիներ... Երեք անգամ նրան կապում են անարգանքի սյունին, և ամեն անգամ ժողովուրդը ողջունում է նրան...

— Այդպես է կյանքը,— մտածում է Դեֆոն։ Ապրում ենք և կարծես ինչ-որ գործ անում, բայց հենց որ ետ ես նայում, տեսնում ես, որ ամեն ինչ անցավ, որ արդեն ծերանում ես, բայց ոչինչ չես հասել, երազներդ չեն իրականացել։

Դանիել Դեֆոն դառը ժպտաց և ձեռքը երկարեց դեպի սեղանը։ Այսօր անթիվ նամակներ, լրագրեր և գրքեր են բերել նրան։ Նա վերցրեց դրանցից մեկը և ցրված հայացքով նայեց խորագրին։ Հանկարծ նրա հայացքը պայծառացավ, նա հուզմունքով հիշեց ճանապարհորդելու ու արկածասիրության իր նվիրական երազանքը։ Գրքի անունն էր «Շուրջերկրյա նավագնացություն 1708—1711 թ.թ.»։ Հեղինակը՝ նավապետ Ռոջերս։ Հրատարակված 1712 թվականին։

Դանիել Դեֆոն թերթեց գիրքը։ Օ՜, ուշագրավ է։

Իսկ այս գլուխը, որ վերնագրված էր «Պատմվածք այն մասին, թե ինչպես էր Ալեքսանդր Սելկիրկը ապրում կղզում», ավելի հետաքրքիր է։

Դեֆոն խորասուզվեց ընթերցանության մեջ։

Դա մի ուշագրավ պատմություն էր, որ հուզել էր ամբողջ Լոնդոնը. մեծահարուստները պատիվ էին համարում հերոսին ճաշի կամ ընթրիքի հրավիրել...

Անգլիական «Հինգ նավամատույց» նավը նավարկում էր Ամերիկա։ Նավապետի ու շոտլանդացի բոցման Ալեքսանդր Սելկիրկի հարաբերությունները լարված էին։ Նավապետը տանել չէր կարողանում իր օգնականին։

Երբ նավը թարմ ջուր վերցնելու նպատակով խարիսխ գցեց Խաղաղ օվկիանոսի Խուան Ֆեր-



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

նանդես արշիպելագի անմարդաբնակ Մասա Ֆուերա կղզու մոտ, վրդովված Ալեքսանդր Սելկիրկը մոտեցավ նավապետին և խստորեն ասաց.

— Դուք ատում եք ինձ, բայց ես էլ ձեզ տեսնել չեմ ուզում։ Գերադասում եմ մնալ այս կղզում։

— Հրաշալի է,— պատասխանեց նավապետը։

Նավաստիները նավակի մեջ դրին հագուստ, վերմակ, մթերք, կայծքարի զենք, վառոդ, գնդակներ, բրիչ, դանակներ, մի քանի գիրք և այլ մանր-մունր բաներ։ Ալեքսանդր Սելկիրկը թույլ

նավակի մեջ և ձեռքով հրաժեշտ տվեց նավախելի վրա հավաքված նավաստիներին.

— Ցտեսություն, բարեկամնե՛ր...

Նա հույս ուներ, որ կղզու մոտով նավեր կանցնեն և դրանցից որևէ մեկով իրեն կհաջողվի հայրենիք վերադառնալ:

Առաջին հերթին Ալեքսանդր Սելկիրկը երկու խրճիթ սարքեց, մեկը՝ մի քիչ մեծ՝ ապրելու համար, իսկ մյուսը՝ փոքր, որպես պահեստ:

Անցնում էին օրեր, շաբաթներ, ամիսներ: Իզուր էին Սելկիրկի հույսերը: Նրա աչքերի առաջ փռված էր ջրային տարածությունների անսահմանություն. սպիտակափառ ալիքներ, դատարկություն, մենություն: Մեն-մենակ այդ ամայի կղզում: Նրան պատեց ահն ու հուսահատությունը: Երբեմն թվում էր, թե ինքը կխելագարվի: Ի՞նչ անել: Միակ փրկությունը աշխատանքն էր: Առավոտից մինչև երեկո նավաստին մի ինչ-որ բանով զբաղված էր. կարում էր, փորում, կերակուր պատրաստում, որսի գնում: Երբ հագուստները մաշվեցին, նա կենդանիների մորթուց նոր հագուստ կարեց: Իրեն անհրաժեշտ բոլոր իրերը պատրաստում էր իր ձեռքով: Երբ վառոդը վերջացավ, Սելկիրկը նետ ու աղեղ սարքեց: Գտած մեխից էլ ասեղ պատրաստեց:

Անցավ երկու տարի... Իզուր էր բոցմանը ծովափ գնում ու հայացքը հառում դեպի հեռուները: Ոչ մի առագաստ:

Աքսորական կյանքի չորրորդ տարին էր արդեն, երբ Սելկիրկը մի նավ նկատեց: Ահա, կարելի է կարդալ նրա անունը՝ «Դյուկ»: Նավից անջատվում է մի նավակ: Նավաստիներ են, որ գալիս են կղզի՝ խմելու ջուր վերցնելու և ծովափնյա ծանծաղուտում խեցգետիններ որսալու:

Ծովափին նրանք նկատեցին մորթե հագուստով, երկար մորուքով ինչ-որ մի վայրենու, որը լայն բացած աչքերով իրենց էր նայում: Հուզմունքից նա ոչ մի բառ արտասանել չկարողացավ:

— Ո՞վ ես դու: Ի՞նչ ես անում այստեղ,— հարցնում են նրան նավաստիները:

Բոցմանի աչքերը լցվում են: Նա փորձում է խոսել, բայց չի կարողանում:

Նրան տանում են նավապետ Ռոջերսի մոտ: Նավաստիները չորս կողմից շրջապատում են նրան: Տեղում են անթիվ հարցեր, լսվում են բացականչություններ. վերջապես, բոցման Ալեքսանդր Սելկիրկը ուշքի է գալիս և վերստանում խոսելու ընդունակությունը: Նա պատմում է իր գլխով անցածը:

— Դուք պետք է գոհ լինեք ձեր բախտից,— ասում է նավապետ Ռոջերսը:

— Ինչի՞ համար: Նրա համար, որ չորս երկար տարիներ նախամարդու նման ապրել եմ այս անմարդաբնակ կղզո՞ւմ,— դառնությամբ հարցնում է բոցմանը:

— Ո՛չ, հավանաբար, ոչ դրա համար: Ձեր կյանքը փրկված է, բայց դուք գիտե՞ք, որ չորս տարի առաջ, երբ դուք մնացիք այս կղզում, ձեր նավը նավաբեկության ենթարկվեց և համարյա ամբողջ անձնակազմը խորտակվեց:

1711 թվականին «Դյուկ» նավը կատարելով շուրջերկրյա ճանապարհորդությունը՝ գալիս է Լոնդոն: Մի քանի օրից Ալեքսանդր Սելկիրկը դառնում է այդ քաղաքի ամենահանրաճանաչ մարդը:

1712 թվականին լույս է տեսնում նավապետ Ռոջերսի «Շուրջերկրյա ճանապարհորդություն» գիրքը, իսկ 1718 թվականին ի հայտ է գալիս նրա երկրորդ հրատարակությունը: 1713 թվականին «Ինգլիշմեն» հանդեսում տպագրվում է լրագրող Ռիչարդ Ստիլի գրվածքը՝ «Պատմվածք այն մասին, թե ինչպես էր Ալեքսանդր Սելկիրկը ապրում կղզում»:

Այդ բոլորը ընկնում են Դանիել Դեֆոյի ձեռքը: Ի՜նչ հետաքրքիր թեմա, ինչպիսի՜ հարուստ նյութ: Ի՜նչ լայն հնարավորություն երևակայության համար, որպեսզի ստեղծի կամքի տեր, համարձակ մարդու հետաքրքիր կերպար, մի մարդ, որն այդքան դժվարություններ հաղթահարելով՝ մենամարտի է դուրս եկել բնության դեմ: Դեֆոն սկսում է գրել, գրում է ոգևորված, մի շնչով, համարյա չկտրվելով սեղանից:

Նա փոխում է մի քանի փաստեր, ավելացնում է նոր պատկերներ, նոր արկածներ: Այն ամբողջը ինչ նա գրեց, համարյա ոչինչ չունի ընդհանուր նավապետ Ռոջերսի գրածի հետ: Դեֆոն իր հերոսին անվանում է Ռոբինզոն Կրուզո, իր դարընկերներից մեկի անունով: Գործողության վայրը նույնպես փոխված է՝ դա տեղի է ունենում ոչ թե Խաղաղ, այլ Ատլանտյան օվկիանոսում, Օրինոկո գետի գետաբերանից ոչ հեռու, մի վայր, որն այն ժամանակ դեռ ուսումնասիրված չէր:

Ահա 240 տարուց ավելի է այդ գիրքը մեծ հետաքրքրությամբ կարդում են սերունդները: Ռոբինզոն Կրուզոն և Ուրբաթը գերում են ընթերցողների սրտերը:

Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԸ



# ՎԻՇԱՊՕՁԵՐԻ «ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ»

*Երկրագնդի վրա ապրում են օձերի մոտ 2500 տեսակ։ Նրանք տարածված են գրեթե երկրի բոլոր մասերում, բացառությամբ Նոր Զելանդիայի, բևեռամերձ շրջանների և օվկիանոսային մի շարք կղզիների։*

*Ամենից շատ օձեր հանդիպում են արևադարձային և մերձարևադարձային երկրներում։ Այնտեղ ամեն տարի նրանց խայթոցից մեռնում են տասնյակ հազարավոր մարդիկ։ Մարդու համար առանձնապես վտանգավոր են ակնոցավոր օձերը (կոբրա), որոնցից մի տեսակը դեռ հեռվից (մոտ մեկ մետր տարածության վրա) կարողանում է իր սպանիչ թույնը արսկել թշնամու վրա։*

*Սակայն մարդու համար բոլոր օձերը չէ, որ սարսափելի են։ Նրանցից առանձին տեսակներ անգամ օգտակար են։ Արևադարձային առանձին երկրներում նրանց ընտելացնում և օգտագործում են իրենց կյանքի պաշտպանության համար։ Այս տեսակետից առանձնապես մեծ ծառայություն են մատուցում վիշապօձերը։ Սրանք շատ բնատիրերի պաշտպանում են ոչ միայն ընդհանրապես թշնամիներից, այլև հատկապես թունավոր օձերից։ Այս ձևով ամեն տարի նրանք կարողանում են հազարավոր մարդկանց կյանք փրկել վերահաս վտանգից։*

*Վիշապօձերը առանձնապես ուշադիր են երեխաների կյանքի նկատմամբ։ Բավական է, որ երեխան դուրս գա տնից, նրանք անմիջապես ուղեկցում են նրան և յուրաքանչյուր քայլում հսկում՝ պաշտպանելով նրանց կյանքը հատկապես թունավոր օձերի սպանիչ խայթոցից։ Հենց այս պատճառով այգիներում, որտեղ երեխաներն են լինում վիշապօձերի ուղեկցությամբ, սովորաբար իսպառ բացակայում են թունավոր օձերը, չնայած հաճախ այգիների շուրջը նրանք վխտում են անհամար քանակությամբ։*

*Ամենից շատ վիշապօձեր են տանը պահում Բրազիլիայում։ Այդ փորձը նրանք ձեռք են բերել բնիկներից (հնդկացիներից), որոնք վիշապօձերի միջոցով կարողանում են պաշտպանվել թշնամիներից և թունավոր օձերից։ Ներկայումս այս կերպ վարվում են նաև Հնդկաստանում։*

Կ. ՕՀԱՆՅԱՆ

# „ԹԱՐՄ ՕԴ..." ՊԱՀԱՐԱՆԻՑ

Բրո՛նխայի՛ն ասթմա հիվա՛նդությա՛ն մասի՛ն լսած կլի՛նեք։ Թոքերի առաձգակա՛նությու՛նը



թուլա՛նում է, և ՛ներշ՛նչած օդը դժվարությամբ է արտաշ՛նչվում՝ սովորաբար գիշեր՛ներ՛ն առաջ բերելով շ՛նչահեղձությա՛ն ծա՛նր ՛նոպա՛ներ։ Նոպա՛ն վերաց՛նելու կարևոր միջոց է մաքուր օդ շ՛նչելու համար պատուհա՛՛ները բացելը։

Եվ. ահա. մի հիվա՛նդի մոտ գիշերը սոսկալի ՛նոպա է սկսվում։ Խեղճը մահճակալի մեջ ՛նստած խեղդվում է. չկարողա՛նալով ա՛նգամ հարևա՛՛ներին օգ՛նությա՛ն կա՛նչել։ Մեկ էլ հիշում է բժշկի խորհուրդը՝ պատուհա՛նը պետք է բացել։ Բայց ո՞վ կբացի պատուհա՛նը. տա՛նը միայ՛ն ի՛նքն է։ Շատ չմտածելով. վերց՛նում է կոշիկը և տուր թե կտաս պատուհա՛նի՛ն։ Ապակի՛ն զ՛րնգոցով կոտրվում է. ձմեռվա սառը օդը ՛ներս է խուժում սե՛նյակ. և ՛նոպա՛ն ա՛նց՛նում է։

Հիվա՛նդը հա՛նգիստ ք՛նում է. իսկ երբ առավոտյա՛ն արթ՛նա՛նում է. զարմա՛նքից այլայլվում է։ Դու մի ասի՝ գիշերը. ի՛րե՛ն կորցրած. պատուհա՛նի ապակի՛ն կոտրելու փոխարե՛ն. կոշիկով խփել. փշրել է... գրապահարա՛նի ապակի՛ն։

## ԵԶՈՎՊՈՍՅԱ՞Ն ԼԵԶՎՈՎ

*Ստենոկարդիա հիվանդությամբ էր տառապում իմ հարևանը։ Սրտի շրջանում սոսկալի ցավերը տանջում էին խեղճ մարդուն, բայց ծխախոտը բերանից չէր գցում։ Մասնագիտական լեզվով արված խորհուրդներս չէին օգնում։ Որոշեցի դիմել Եզովպոսի օգնությանը.*

*— Լսի՛ր, բարեկամ։ Վերջերս Մատենադարանի հին ձեռագրերից մեկում մի բան կարդացի։ Պարզվում է, որ ծխելը շատ օգտակար բան է եղել։ 1. Մխողի տունը գող չի մտնի։ 2. Շունը չի կծի նրան։ 3. Նա չի ծե-*

րանա: Դու այս բլանների վրա մտածիր, մինչև ես շարունակեմ այդ հին դավթարը կարդալ, գուցե վերջում դրանց պատասխանը գտնվի:

Հարևանս ամեն առավոտ հանգիստ չէր տալիս.

— Հը, գտա՞ր պատասխանը:

Զանգած մի շաբաթ, հարևանիս հանդիպելով, բացատրեցի.

Գտա: Ջեռագիր գրքի ամենավերջին էջում էր գրված. «Գող չի մտնի ծխողի տունը, որովհետև նա ամբողջ գիշերը հազում է, իսկ գողը չի սիրում արթուն մարդու տունը մտնել: Երկար տարիներ ծխողը թուլանում է ու փայտով ման գալիս: Իսկ ո՞ր փայտով մարդուն կարող է շունը կծել: Եվ, վերջապես, չի ծերանա ծխողը, քանզի կմեռնի ջահել հասակում:

Հարևանս գունատվեց:

Եզովպոսյան լեզուն օգնեց բժշկությանը. հարևանս վերջնականապես թողեց ծխելը:

## ՃԱՆՃԸ ԵՎ ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԴԱՇՏԸ



Միջատները շատ զգայուն են մագնիսային դաշտի նկատմամբ: Հետևեցեք թեկուզ սովորական տնային ճանճերին: Նախ՝ կողմնացույցով որոշեցեք թե որտեղ են ընկնում հյուսիսն ու հարավը, արևելքն ու արևմուտքը, և կտեսնեք, որ ճանճը (եթե քամի չկա և ուրիշ ոչինչ նրան չի խանգարում) միշտ նստում է խիստ որոշակի ուղղությամբ՝ կամ հյուսիս-հարավ, կամ արևելք-արևմուտք գծով: Իր դիրքը ճանճը փոխում է կտրուկ թռիչքով, այնպես, որպեսզի նորից գրավի այդ ուղղություններից մեկն ու մեկը:

Եթե ճանճին դնեք ուժեղ մագնիսի բևեռների միջև, նախ կսկսի անհանգստանալ՝ կթռչկոտի, կվազվզի, շուռ ու մուռ կգա, ապա ձնշված ու տխուր կսսկվի: Եվ էլի կնստի կամ մագնիսի ուժագծերի ուղղությամբ, կամ ուղիղ նրանց դիմաց:

Իսկ եթե զգուշորեն մագնիսը հեռացնեք, ապա ճանճը կսկսի մաքրվել՝ թաթը թաթին կքսի, թևերից ինչ-որ բան կքերի, գլուխը կհարդարի:

Ինչպե՞ս է ճանճը զգում մագնիսային դաշտը և ինչու է բնությունը նրան այդպիսի հատկություն տվել, առայժմ պարզ չէ: Ըստ երևույթին նա մի զգայուն օրգան ունի, որն ընդունակ է տեսնելու մագնիսային ուժագծերի ուղղությունը ոչ պակաս ճշգրտությամբ, քան մեր կողմնացույցն է: Գիտնականները փնտրում են այդ օրգանը, բայց առայժմ արդյունք չկա:



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Որտե՞ղ ես, Ջանի» տեխնիկական պիեսը

Գլխավոր խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06.

ՎՖ 06883, Պատվեր՝ 1610, Տպաքանակ՝ 16570, Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 28 X. 1966 թ., ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91,

Գինը՝ 20 կ.

**Խաղեր**



# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

*Երբ մենք նոր դպրոց տեղափոխվեցինք, երեխաների մեծ մասն իրար չէր ճանաչում: Մեր ջոկատավարն ասաց.*

*— Երեխաներ, եկեք մի խաղ խաղանք, որի շնորհիվ հենց առաջին օրվանից դուք կծանոթանաք իրար հետ:*

*Մենք նստեցինք աթոռների վրա, որոնք շարված էին շրջանաձև:*

*— Ամեն մեկդ սեղմեք ձեր աջ կողմում նստածի ձեռքը, ծանոթացեք նրա հետ, իմացեք նրա անունը և ազգանունը,— ասաց ջոկատավարը:*

*Մենք կատարեցինք այդ:*

*Ջոկատավարը հերթով մոտենում էր նստածներին և հարցնում.*

*— Ո՞վ է քո ծանոթը:*

*Իսկ սա անմիջապես ոտքի էր կանգնում և տալիս աջ կողմում նստածի անուն-ազգանունը:*

*Ով մոռանում էր կամ շփոթվում, խաղի կանոնի համաձայն երգում էր, պարում կամ արտասանում:*

*Խաղին կարող են մասնակցել 20—80 հոգի: Այն հարմար է 4-րդից բարձր դասարանցիների համար:*

* * *

Գլխի վերևում երկու ձեռքով պահել մի տախտակի կտոր՝ գնդակը դրած վրան: Այդ դիրքով



կատարել կքանիստ և վերկաց այնպես, որ գնդակը չընկնի տախտակի վրայից:

* * *

Պատից 3—4 քայլ հեռավորության վրա դրեք մի արկղ: Վերցրեք գնդակը, կանգնեք պատից 7—8 քայլ հեռու և հարվածեք պատին այնպես, որ գնդակն ընկնի արկղի մեջ:

## ԱՇԽԱՏԻՐ ՉՇՓՈԹՎԵԼ

*Այս խաղին կարող են մասնակցել մի քանի հարյուր երեխա:*

*Խաղավարը ձախ ձեռքով պահում է 4 փոքրիկ դրոշակ, իսկ աջ ձեռքով մեկ-մեկ օդում ծածանում է այդ դրոշակները:*

*Երբ նա ծածանում է կանաչ դրոշակը, բոլորը ծափ են տալիս, թռչկոտում: Կապույտ դրոշակը ցույց տալու ժամանակ խաղացողները օրորում են գլուխները: Սպիտակ դրոշակը ծածանելիս տիրում է լռություն, իսկ կարմիր դրոշի ժամանակ բոլորը կանգնում են զգաստ:*

*Ովքեր կշփոթվեն, տուգանք պիտի տան: Ովքեր կշփոթվեն, ուրեմն անուշադիր են:*

*Խաղը կատարել արագ տեմպով:*

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ
*Հանրապետության վաստակավոր ուսուցիչ*



*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

20 կ. ինդեքս՝ 77806

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ





ՄԵՐ ՏՈՒՆԸ
ՇԵՊՈՅԱՆ ՀԱՅԿ
Թալին, Դավթաշեն, 3-րդ դաս. աշ.

ԴԱՇՏԱՅԻՆ ԾԱՂԻԿՆԵՐ
ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ ՏԻԳՐԱՆ
Վեդու շրջանի Կիրովի անվ. սովխոզ, 6-րդ դաս. աշ.





ԱՂՋԻԿԸ
ԲԵՋԵՋՅԱՆ ԵՎԱ
Երևան, 6 տ.

ԾՈՎԱՓԻՆ ԲԱԼՅԱՆ ԳԵՎՈՐԳ Երևան, 13 տ.

ԱՐՏ. ԲԱԲԱՅԱՆ



Նկարիչ՝
ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ

# ՈՐՏԵ՞Ղ ԵՍ, ՋՈՆԻ




## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

| | |
|---|---|
| ԱՐՄԵՆ<br>ԱՆԱՀԻՏ<br>ԽՈՐԵՆ<br>ԳԵՎՈՐԳ<br>ՍՈՒՐԻԿ | Մեր բակի փոքրիկ հերոսները |

ՊԱՊԻԿ — մեր բակի մաեստրոն
ՋՈՆ ԻԲԱՐԵՍ — ճոչակավոր բռբեադոր
ՋՈՆԻ — կրկեսային արտիստ
ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ — սևամորթ մի տղա

Գործողությանը մասնակցում են մեր բակի բնակիչները, ցլամարտի հաղորդավարը, սրճարանի հաճախորդները, հնդկական ոստիկանը, փոքրիկ Ջոնիի տերը՝ յանկին, փիղ, պարուհի, ձիեր, սիրամարգ, վագրեր, կապիկներ և բոլոր նրանք, ովքեր կարող են նպաստել այս ներկայացման հաջողությանը:

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

### ԱՌԱՋԻՆ ՊԱՏԿԵՐ

Բեմը խավար է: Հանկարծ լսվում են ռադիոազդանշաններ: Բեմի վերևի անկյունում հայտնվում է մի հեքիաթային գորգ, վրան՝ Հեքիաթասացը: Գույնզգույն լուսավորված գորգը կրակներ է արձակում և սավառնում է բեմում:

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — *Որտե՞ղ է իմ փնտրած քաղաքը, իմ հեքիաթների հեքիաթ, մշտածիծաղ քաղաքը... Իմ կորած քաղաքը:* (Հանկարծ ներքևում վառվում են լույսերը: Երևում է լույսերի մեջ ողողված Երեկոյան Երևանի համայնապատկերը): *Այս ի՞նչ չքնաղ քաղաք է, կիջնեմ հենց այս քաղաքը:*

Երևանյան աստղազարդ երեկո: Բարձրահարկ շենքերով շրջապատված բակ: Լսվում է «Երևանյան գիշերների» մեղմ, հազիվ լսելի երաժշտությունը, որը գնալով անհետանում է... Մտնում է պապիկը:

ՊԱՊԻԿ — *Այս ո՞վ է պտտվում մեր քաղաքի վրա: Հե՜յ, դու ո՞վ ես:*

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — (Դեռևս վերևում): *Ես ամենքին հայտնի Հեքիաթասացն եմ, այսինքն՝ հեքիաթ պատմողների արքան:*

ՊԱՊԻԿ — *Իսկ ի՞նչ ես անում մեր կողմերում:*

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — *Ես փնտրում ու գտնում եմ լավ և խելոք երեխաների, նրանց գեղեցիկ-գեղեցիկ հեքիաթներ եմ պատմում, նրանց բարություն ու քաջություն եմ սովորեցնում:*

ՊԱՊԻԿ — *Իսկ դու ճանաչո՞ւմ ես մեր բակի փոքրիկ հերոսներին:*

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — *Ովքե՞ր են նրանք:*

ՊԱՊԻԿ — *Ա՜խ, չգիտե՞ս նրանց, դու չգիտե՞ս մեր փոքրիկ երազիչտներին: Հիմա նրանք կհայտնվեն ...*

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — *Իսկ նրանք ամփա՞փ են, քա՞ջ են:*

ՊԱՊԻԿ — *Այն էլ ինչպե՜ս: Նրանք բարի են, լավ սրտի տեր ...*

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — *Ես չեմ հավատում, ծերուկ: Այդ ես դեռ կփորձեմ ... Հիմա ես չքանում եմ, երբ պետք լինի, կհայտնվեմ:* (Ազդանշան տալով և լույս արձակելով՝ անհետանում է):

ՊԱՊԻԿ — *Թռավ, անհետացավ: Ի՞նչ ասաց, չի հավատում, մի դրա՜ն տեսեք,-հին աշխարհից եկած խրտվիլակ: Բայց ես նրա մասին երեխաներին դեռ չեմ պատմի, չէ՞ որ ասաց՝ երբ պետք լինի, ինքը կհայտնվի ... Հա՜-հա՜-հա՜, Հեքիաթասաց, հա՜-հա՜-հա՜ ...* (Ծիծաղում է):

ԱՐՄԵՆ — (Անկյունից բակ մտնելով՝ ուշադրությամբ դիտում է շուրջը: Թաքնվում է ծառի հետևում): *Պապի՛կ, պապի՛կ, արի այստե՛ղ:*

ՊԱՊԻԿ — *Ապրես, Արմե՛ն, դու բոլորից պարտաճանաչ ես:*

ԱՐՄԵՆ — *Իսկ ինչո՞ւ են մյուսներն ուշանում:* (Սուլում է: Բացվում են տարբեր հարկերի լուսամուտները: Երևում են Խորենի, Գևորգի, Անահիտի և Սուրիկի գլուխները): *Իջե՛ք, իջեք ներքև՛, դե շո՜ւտ ...*

ԱՆԱՀԻՏ — *Մայրիկը դեռ չի քնել:*

ԱՐՄԵՆ — *Ի՞նչ ես ասում, չեմ լսում:*

ԱՆԱՀԻՏ — *Մի՛ բղավիր ... Ասում եմ, որ մայրիկը դեռ չի քնել:*

ԳԵՎՈՐԳ — (Վերևից, ձեռքով նշան է անում): *Մեկ-մեկ իջեք:*

ՊԱՊԻԿ — *Ես այստեղ եմ, մի՛ վախեցեք: Սուսիկ-փուսիկ եկեք ...*





ԽՈՐԵՆ (Վերևից կախում է պարանը)։ *Ես... հո՛պ։* (Պարանով սահում է ներքև)։

ՊԱՊԻԿ *Ապրես, չարաճճի, միևնույն է, քեզ բան չի պատահի, ոսկոր չունես։*

ԽՈՐԵՆ *Գևո՛րգ, ճանկի՛ր իմ օրինակին, իջի՛ր պարանով։*

ԳԵՎՈՐԳ *Վախենում եմ պարանը կտրվի։*

ԽՈՐԵՆ *Վախկո՛տ։*

ԳԵՎՈՐԳ *Ով է վախկոտ, այդ հիմա կտեսնես...* (Իջնում է պատշգամբից, ճանապարհին կպչում է ծառի ճյուղին, մնում կախված)։ *Օ՜յ, օ՜յ, օգնեցե՜ք...*

ՊԱՊԻԿ — *Ի՞նչ ես անում, վայր կընկնես։*

ԳԵՎՈՐԳ — *Վա՜յ, մամա ջան, վախենում եմ։* (Թմփոցով ընկնում է գետնին)։

ԱՐՄԵՆ (Վազում է Գևորգի վրա)։ *Գևո՛րգ, Գևո՛րգ, վա՜յ... ձայն չկա։*

ՊԱՊԻԿ *Սպասեցե՛ք, էդ ի՞նչ արիք խեղճ երեխայի գլխին, Գևո՛րգ։* (Շարժում է թևերը)։ *Ա՜յ Գևորգ։*

ԱՆԱՀԻՏ *Դե լավ, մենք գնում ենք։*

ԳԵՎՈՐԳ (Վեր է թռչում)։ *Ո՛չ, ես էլ եմ գալիս...*

ԱՆԱՀԻՏ — *Տեսաք, ես բուժեցի նրան։*

ԳԵՎՈՐԳ *Ա՛հ, այս ի՞նչ է պատահել, գլուխս ցավել է։*

ԽՈՐԵՆ — *Հիմա մենք կուղղենք։* (Բռնում է գլուխը և թափով ծռում աջ)։ *Մե՛կ։*

ԳԵՎՈՐԳ — *Օֆ՜։*

ԱՐՄԵՆ — *Ուղղվեց։*

ԱՆԱՀԻՏ — *Այդ ինչպե՞ս է ուղղվել, տեսեք, հիմա էլ աջ է թեքվել։*

ԳԵՎՈՐԳ — *Իսկապես, ձախ կողմս չեմ տեսնում։*

ԽՈՐԵՆ — *Եկե՛ք, ընդհանուր ուժերով։ Արմե՛ն, դու բռնիր ծնոտից, Անահիտ, դու՝ քթից, իսկ ես՝ մազերից։ Մե՛կ, երկո՛ւ, երե՜ք... Ամեն ինչ կարգին է։*

ԳԵՎՈՐԳ — *Ուղղվեց, ուղղվեց, բավական է։* (Ծիծաղում են)։

ԱՐՄԵՆ — *Ա՛յ, եթե երաժշտական ստուգատեսին մենք հաղթող դուրս գանք, կճանապարհորդենք աշխարհով մեկ, կլինենք շատ քաղաքներում։*

ԱՆԱՀԻՏ — *Ո՜ւհ, ես այնպես եմ ուզում ճանապարհորդել։*



ԳԱԳԻԿ — (Բերելով գործիքները)։ Սկսե՛նք։
ԱՆԱՀԻՏ — Պապիկ, սիրելի պապիկ, դու այնպես լավն ես։
ԳԱԳԻԿ — Վերցրեք գործիքները։
ԽՈՐԵՆ — Իմ թմբուկը պատրաստ է. եթե օգնեմ՝ աշխարհը կդղրդացնեմ։
ԱՐՄԵՆ — Սա էլ իմ կիթառը։ Եթե օգնեմ՝ այս քնքուշ լարերով անգամ սառը հոգիները կջերմացնեմ։
ԱՆԱՀԻՏ — Բայց չէ՞ որ Գևորգը մեր Օրփեոսն է, խաղաղական երգերի սիրահար։
Նա կերգի անուշիկ-անուշիկ երգեր։
Իսկ Անահիտը կձայնակցի իր շվիով։
ԱՐՄԵՆ — Սա շվի չէ, ֆլեյտա է ...
ԳԱԳԻԿ — Երգենք մեր երգը։ (Չափ է տալիս)։ Նվագում է մեր հերոսների նվագախումբը, չափ է տալիս մեր բակի մաեստրոն)։

Թող միշտ լինի արևը,
Թող միշտ լինի երկինքը,
Թող միշտ լինի մայրիկը,
Թող միշտ լինեմ ես ...

Պատուհաններից և պատշգամբներից հարևանները դուրս են հանել իրենց գլուխները։ Երգի ավարտին լսվում են հավանության և բավականության բացականչություններ, ծափեր։ Հանկարծ լսվում են նորից ռադիոազդանշաններ և երևում է լույս արձակող Հեքիաթասացը իր գորգով։
ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — Հիմա ես կփորձեմ նրանց քաջությունը ու հավատարմությունը։
ԲՈԼՈՐԸ — Օ՜հ, ինչ գեղեցիկ ճառագայթներ են, տեսե՛ք, տեսե՛ք ...
(Հանկարծ վերևից փոքրիկ օդապարիկով ներքև է իջնում մի յուրօրինակ շիշ։ Արմենը բռնում է շիշը։ Հեքիաթասացը նորից անհետանում է)։
ԽՈՐԵՆ — Այդ ի՞նչ շիշ ես գրկել։
ԱՐՄԵՆ — Կախարդական է։
ԳԵՎՈՐԳ — Չէ՞ մի ... սովորական շիշ է։
ԱՐՄԵՆ — Ո՛չ, ո՛չ, սա աստղերի թագուհին է ուղարկել։
ԽՈՐԵՆ — Այդ որտեղի՞ց հնարեցիր։
ԳԵՎՈՐԳ — Այդ շշի մեջ Սասունցի Դավթի Քուռկիկ Ջալալին է նստած։
ԽՈՐԵՆ — Շատ մի՛ փիլիսոփայիր, բաց անենք տեսնենք ինչ կա ներսում։
ԱՆԱՀԻՏ — Զգույշ, գուցե նամակ է դրված մեջը։
ԱՐՄԵՆ — Ինչ վախկոտն ես, Անահիտ։ Այստեղ մի կտոր թուղթ կա և ուրիշ ոչինչ։
ԽՈՐԵՆ — Եթե Արմենը ասում է՝ նամակ չէ, ուրեմն՝ նամակ չէ։ Չէ՞ որ նրան դպրոցում ֆիզիկոս են համարում։
ԳԵՎՈՐԳ — (Վերցնում է Արմենի ձեռքից շիշը)։ Ջարդենք։ (Խփում է գետնին և ջարդում, միջից հանում է ինչ-որ թուղթ)։ Ոչինչ չեմ հասկանում, հայերեն չէ։
ԽՈՐԵՆ — Տուր, ես կարդամ։ (Ջանում է կարդալ)։ Չեմ հասկանում ինչ է գրած, ոչ հայերեն է և ոչ էլ՝ ռուսերեն։ Սուրիկը թող կարդա, նա լեզվաբանի տղան է հենց։ (Տալիս է Սուրիկին)։
ՍՈՒՐԻԿ — (Աշխատում է կարդալ մեծ դժվարությամբ)։ Սրանք լատիներեն տառեր են, այ, տեսե՛ք ... Այ, Ջոնի, այսինքն՝ Ջոնին եմ ... Էլի՞ լ բայ, այսինքն փոքրիկ տղա ... էլ չի կարդացվում։
ԱՐՄԵՆ — Ջոնին է, երևի դա փոքրիկ սևամորթ Ջոնին է ...
ԱՆԱՀԻՏ — Այո՛, այո՛, հիշում եք այն ֆիլմը ... Խեղճ Ջոնի, երևի նա խեղդվել է ծովում։
ԱՐՄԵՆ — Ո՛չ, Ջոնիին հետապնդում են, նա երևի օգնություն է խնդրում, չէ՞ որ ֆիլմի Ջոնին մի հարուստ յանկիի ծառա է ...
ԳԵՎՈՐԳ — Իսկ որտե՞ղ է նա ... Մենք ինչպե՞ս իմանանք ...
ԱՐՄԵՆ — Սևամորթ փոքրիկները Ամերիկայում են լինում։
ԽՈՐԵՆ — (Ծիծաղելով)։ Հի՜, հի՜, հի՜։ Նրանք ապրում են Աֆրիկայում։
ԱՆԱՀԻՏ — Նրանք ամեն տեղ էլ կարող են լինել։ Խեղճ Ջոնի, երևի հիմա այն հարուստ յանկին նրան ծեծում է։
ԱՐՄԵՆ — Ա՛յ, թե կարողանայինք գնալ նրա հետևից ...
ԱՆԱՀԻՏ — Ինչպե՞ս գնայինք, նա երևի ծովերից այն կողմ է ապրում։
ԳԱԳԻԿ — Իսկ դուք կուզեի՞ք գնալ Ջոնիի հետևից։
ԱՐՄԵՆ — Պապիկ, մենք պետք է փնտրենք, գտնենք Ջոնիին։
ԳԱԳԻԿ — Իսկ դուք դժվարություններից չե՞ք վախենա ...
ԱՆԱՀԻՏ — Ա՜խ պապիկ, միայն թե կարողանայինք գնալ։
(Հանկարծ նորից երևում է Հեքիաթասացը)։
ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — Ես կտանեմ նրանց ծովերով ու օվկիանոսներով, ես կտանեմ նրանց Ջոնիի հետևից։
Հանկարծ բեմում լույսերի խաղի միջոցով ստեղծվում է ծովի երևակայական պատկերը... Ծովի հատակից վեր է բարձրանում չնաշ-



խարհիկ գեղեցկությամբ մի տարօրինակ նավ:
Բոլորը ապշած են:

*ԱՐՄԵՆ — Ծո՜վ, ծո՜վ ...*

*ԱՆԱՀԻՏ — Ի՞նչ գեղեցիկ նավ է։*

*ԱՐՄԵՆ — Սա այն նավն է, որ մեզ պետք է տանի աշխարհից աշխարհ ...*

*ԳԵՎՈՐԳ — Նավի կապիտանը ես կլինեմ։*

*ԽՈՐԵՆ — Ո՛չ, ե՛ս կլինեմ։*

*ՍՈՒՐԻԿ — Նավի կապիտանը կլինի Արմենը։* *Չէ՞ որ Արմենը փոքրիկ ֆիզիկոս է, նա բոլորից լավ է հասկանում այդ գործը։* (Հանկարծ լսվում է նեգրական օրորոցային երգի մեղմ մեղեդին): *Սո՛ւս, լսո՞ւմ եք, այդ Ջոնին է, նա մեզ է կանչում։ Նա կանչում է ծովերի այն կողմից։*

*ԱՐՄԵՆ — Մենք պետք է փրկենք նրան։ Ես նավի կապիտանն եմ, լսեցեք իմ հրամանը։ Բարձրանա՛լ նավ։ Խորենին նշանակում եմ բոցման։*

*ԽՈՐԵՆ — Լսո՛ւմ եմ, ընկե՛ր նավապետ։*

*ԱՐՄԵՆ — Բարձրացնե՛լ խարիսխները, բարձրացնե՛լ առագաստները։*

*ԽՈՐԵՆ — Կա, բարձրացնե՛լ խարիսխները, բարձրացնե՛լ առագաստները։* (Մյուսները, որպես նավաստիներ, կատարում են տրված հրամանը):

*ԱՐՄԵՆ — Ուղղություն վերցնել արևմուտք, առա՜ջ ...*

Նավը սլանում է առաջ, խումբը երգում է իր երգը:

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

Հարավային Ամերիկայի որևէ երկիր հիշեցնող տեսարան: Ցլամարտի ստադիոն: Հեռվում բարձրաբերձ տներ: Լատինա-ամերիկյան երաժշտություն: Ռադիոբարձրախոսից լսվում է հաղորդավարի ձայնը:

*ՀԱՂՈՐԴԱՎԱՐ — Այսօր մեծ մրցություն է։ Աշխարհի ամենահաղթ ցլամարտիկ, թորեադոր Ջոն Իբարեսը մրցելու է բազմաթիվ թորեադորների այն աշխարհն ուղարկած Դոտրիկոս ցուլի հետ։*

*ԱՐՄԵՆ — Այս ի՞նչ ձայներ են։*

*ԱՆԱՀԻՏ — Սա ստադիոն է։*

*ԳԵՎՈՐԳ — Ի՜նչ հետաքրքիր է, գնանք դիտենք։*

*ԽՈՐԵՆ — Գնանք։*

*ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — Նրանք կտարվեն հետաքրքիր տեսարանով և կմոռանան Ջոնիին։ Երեխաները այդպես են։ Երեխան մնում է երեխա։*

*ՁԱՅՆԵՐ ՍՏԱԴԻՈՆԻՑ—Բռա՜վո, Իբարե՛ս, բռա՜վո, Ջո՛ն, փա՜ռք անհաղթ թորեադորին։*

Լսվում է շեփորի երկար և ազդարարիչ կանչը: Հրապարակ է մտնում թորեադորի գեղեցիկ տարազով Ջոն Իբարեսը:

*ԻԲԱՐԵՍ — Տե՛ր աստված, ինձ ո՜ւժ տուր այս ամենաանհաղթ Դոտրիկոս ցուլին հաղթելու համար, եթե չհաղթեմ, ինձ դուրս կանեն, երեխաներս քաղցած կմնան, տե՛ր աստված, ինձ ո՜ւժ տուր։*

ՁԱՅՆԵՐ ՄՏԱԴԻՈՆԻՑ — Աղմուկ, բացականչություններ: Թոռեադորը մի քանի անգամ հանդիսավոր գլուխ է տալիս և համապատասխան կեցվածք ընդունելով սպասում է Դոտրիկոս ցուլին: Լսվում է շեփորի երկրորդ կանչը: Դաշտ է վազում Դոտրիկոս ցուլը: Սկսվում է ցլամարտը: Բեմի անկյունից երևում են մեր հերոսները:

ԱՐՄԵՆ—Ի՜նչ հոյակապ տեսարան է: Տեսնես ո՞վ կհաղթի ...

Այդ պահին Դոտրիկոս ցուլը Իբարեսին բարձրացնում է պոզերին և շրմփացնում գետնին: Աղմուկ ժողովրդի մեջ:

ԽՈՐԵՆ — Ցուլը կսպանի նրան, հասնենք օգնության: (Խմբով վազում են և փաթաթվում ցուլի ոտքերին, ցուլը հանկարծակիի եկած, կանգնում է):

ՁԱՅՆԵՐ — Այդ ովքե՞ր են խանգարում մրցությունը: Վախկոտ Ջոն, Ջոն Իբարեսը պետք է մեռնի: Կեցցե՜ն փոքրիկները, կեցցե՜ն փոքրիկ քաջերը:

Տղաները շրջապատել են Իբարեսին:

ԱՐՄԵՆ — Ո՛չ, նա չպետք է մեռնի, խնայե՛ք նրան, մենք խնդրում ենք, աղաչում ենք, խնայեցե՛ք նրան: Այ, ցուլն էլ չի ուզում, որ Ջոնը մեռնի, ճի՞շտ է: (Ցուլը գլխով նշան է անում: Ձայներ. «Թող ապրի՜ Իբարեսը, կեցցե՜ Իբարեսը»):

ԻԲԱՐԵՍ — Շնորհակալություն, բարեկամնե՛րս: Ովքե՞ր եք դուք:

ԱՐՄԵՆ — Մենք Ջոնիին ենք փնտրում, դուք էլ Ջոնի եք: Այդ դուք եք երեկ նամակը գրել:

ԻԲԱՐԵՍ — Օհ, ո՛չ, բարեկամնե՛րս, ես Ջոնի չեմ, այլ՝ Ջոն: Ջոն Իբարես: Ես նամակ չեմ գրել:

ԱՆԱՀԻՏ — Քեռի Իբարես, մենք փնտրում ենք Ջոնիին, փոքրիկ սևամորթ Ջոնիին, նրան տարել է մի հարուստ յանկի:

ԻԲԱՐԵՍ— Ես պատրաստ եմ օգնել ձեզ, չէ՞ որ դուք փրկեցիք իմ կյանքը: Իսկ որտեղի՞ց եք դուք գալիս:

ԱՐՄԵՆ — Մենք գալիս ենք հեռու-հեռվից: Օվկիանոսների այն կողմից, մենք հոկտեմբերիկներ ենք:

ԻԲԱՐԵՍ — Ես չգիտեմ, թե ինչ բան է հոկտեմբերիկը, բայց կօգնեմ ձեզ: (Դառնալով դեպի ժողովուրդը): Է՜յ, ժողովո՛ւրդ, այս փոքրիկները գալիս են հեռու աշխարհից, նրանք փնտրում են սևամորթ փոքրիկ Ջոնիին, դուք չե՞ք տեսել նրան՝ իր տիրոջ՝ հարուստ յանկիի հետ միասին:

Ամբողջ ստադիոնով հնչում է. «Ջոնի՛, հե՜յ, ո՞վ է լսել այդ անունը: Չկա, չկա այդպիսին»:

ԻԲԱՐԵՍ — Գնանք այստեղից, նա կարող է իր տիրոջ հետ սրճարանում լինել, գնա՛նք, իմ բարեկամներ:

Բեմը պտտվում է, իրար ձեռքից բռնած գնում են Իբարեսը և մեր հերոսները: Հայտնվում է Հեքիաթասացը:

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — Օ՜հ, տեր աստված, այս երեխաները համառ են, նրանք հաստատ որոշել են գնալ իրենց Ջոնիի հետևից ... լավ, ես կհետևեմ նրանց:

## ԵՐՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

ԻԲԱՐԵՍ — Մտնենք այս սրճարանը: Ես ճանաչում եմ մի սևամորթ Ջոնիի, նա իր տի-



քոջ հետ միշտ այստեղ է լինում։ (Մտնում են ամառային սրճարան)։ Պարոննե՛ր, մենք փնտրում ենք պարոն Ջոնիին և նրա փոքրիկ ծառա Ջոնիին, նա միշտ այս սրճարանում է լինում։

ՀԱՍՏԼԻԿ ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ — Ջոնի... այո, կարծեմ Ջոնի, նրանց հարյուրից իննսունը Ջոնի են։ Իսկ դուք որտեղի՞ց եք ճանաչում այդ սև ծառային։

ԱՆԱՀԻՏ — Նա սև ծառա չէ, նա փոքրիկ Ջոնին է։ Մենք եկել ենք, որ ազատենք նրան։

ՀԱՍՏԼԻԿ ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ —(Բաց-բաց ծիծաղում է)։ Հա՜-հա՛, հա՜, միամիտ և տարօրինակ փոքրիկ պարոններ։ Ջոնին յանկիի սեփականությունն է, ո՞վ կարող է տիրոջից խլել նրա սեփականությունը։

ԱՐՄԵՆ — Նա Ջոնին է, նա իր չէ, որ սեփականություն լինի։

ՀԱՍՏԼԻԿ ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ — Ինչ է, դուք երկնքի՞ց եք իջել, մեր երկրում գլխավորը առևտուրն է. գնում ենք ու վաճառում։

ԱՐՄԵՆ — Դուք իրավունք չունեք մարդուն վաճառելու։

ՄԻ ՀԱՐԲԱԾ ՀԱՃԱԽՈՐԴ — (Երերալով, գավաթը պարզած առաջ է գալիս)։ Բռա՜վո, սը՛ր, բռա՜վո, համարձակ տղա, խմում եմ քո կենացը։ Հիմար անասուն է այս սրճարանատերը, ես կփշրեմ նրա ատամները։ (Սրճարանատիրոջը)։ Երաժշտություն եմ ուզում, ո՞ւր է երաժշտությունը։

ՍՈՒՐԻԿ — Գնա՛նք այստեղից, քեռի Իբարես, գնա՛նք։

ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ —Ո՛չ, դուք մի բան պիտի գնեք ինձանից։

ՀԱՐԲԱԾ ՀՅՈՒՐ — Երաժշտություն եմ ուզում,



*երաժշտություն եմ ուզում:* (Նկատելով Արմենի կիթառը)*: Օ՜հ, կիթառ. դու նվագո՞ւմ ես:*

*ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ* — (Իրաբեսին)*: Պարոն, խնդրում եմ, աղաչում եմ, նվագեցե՛ք, ես կվարձատրեմ քո փոքրիկ բարեկամներին, իմ երաժիշտները լքել են սրճարանս, ես սնանկանում եմ:*

Մտնում է մի զույգ:

*ԿԱՎԱԼԵՐ — Մենք ուզում ենք պարել, պարոն սրճարանատեր:*

*ԴԱՄԱ — Օ՜հ, փոքրիկ երաժիշտներ, սիրուն, պուպուշ երաժիշտներ: Դուք կնվագեք, չէ՞, կնվագե՞ք ...*

*ԱՐՄԵՆ — Մեզ փող պետք չէ, բայց եթե շատ ես ուզում, կնվագենք: Իսկ ի՞նչ կկամենայիք:*

*ԴԱՄԱ — Ուժեղ, խելակորույս պար:* (Զույգը պարում է ռիթմիկ, կատաղի և կրքոտ):

*ԲՈԼՈՐԸ — Բռա՜վո, բռա՜վո ...*

*ՍՐՃԱՐԱՆԱՏԵՐ — Շնորհակալ եմ, սեր, երաժիշտներ, նորից իմ սրճարանը կյանք առավ: Մնացեք այստեղ, ինձ մոտ, ես ձեզ կվճարեմ, կկերակրեմ:*

*ԱՐՄԵՆ — Մերսի, պարոն: Մենք փողի համար չնվագեցինք: Մենք պետք է գնանք: Մենք պետք է գտնենք Ջոնիին:* (Իրաբեսի առաջնորդությամբ դուրս են գալիս սրճարանից):



## ՏԵՍԱՐԱՆ

Նորից ծովը. Իրաբեսը ճանապարհ է դնում իր բարեկամներին: Բոլորը նավի վրա են, Իրաբեսը՝ ափին:

*ԻՐԱԲԵՍ — Գնացեք բարով, իմ լավ, լավ բարեկամներ, տարեք հիշատակ Թորեադորի իմ այս գլխարկը, ես էլ ուրիշ ոչինչ չունեմ:*

*ԱՐՄԵՆ — Շնորհակալ ենք, դու էլ վերցրու իմ կիթառը:*

Նավից գցում է կիթառը: Իրաբեսը ծովափին կիթառի նվագակցությամբ երգում է իր երգը, նավը գնում է ... Մեր հերոսները թափահարում են թաշկինակները: Իրաբեսը ճանապարհում է նրանց իր գեղեցիկ երգով:

*ՀԵՔԻԱԹԱՍԱՑ* — (Նորից երևալով)*: Ի՜նչ լավ սրտի տեր են նրանք: Ոչինչ չի կարող նրանց ետ կանգնեցնել իրենց նպատակից, ոչինչ ... Ես կգնամ նրանց հետևից՝ թեկուզ աշխարհի ծայրը:*

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

Հնդկաստանի մի որևէ վայր հիշեցնող անտառ-պատ։ Լսվում է հնդկական երաժշտություն։ Փողոցի խաչմերուկներում երթևեկությունն է կանոնավորում հնդիկ ոստիկանը։ Դեպի աջ, առաջին պլանի վրա՝ զմրխտած, գույնզգույն նախշերով վրան։ Վրանի ճակատին գրված է «Շրջիկ կրկես»։ Վրանի ներսը չի երևում։

Մտնում են մեր հերոսները։ Նրանք շփոթված են զարմանահրաշ տեսարանից։

ԱՐՄԵՆ — Օ՜հ, նայե՛ք այս կողմը, սա հնդկական տաճար է։

ԱՐՄԵՆ — Այս երկրի միլիցիոների հագուստը այդպիսին է։

ԱՆԱՀԻՏ — Եկեք նրանից հարցնենք Ռաջ Կապուրի մասին, նա անպայման կիմանա։

ՈՍՏԻԿԱՆ — (Լսելով Ռաջ Կապուրի անունը հետաքրքրվում է)։

ԱՐՄԵՆ — Նրանք անգլերեն հասկանում են։

ՈՍՏԻԿԱՆ — Գուդ բայ, մայ բոյ[1]։

ԱՐՄԵՆ — Դուք Ռաջ Կապուրին ճանաչում եք։

ՈՍՏԻԿԱՆ — Ռաջ Կապուր սինեմա, կինո-արտիստ (աշխուժանալով) բխայ, բխայ, վերի մաչ, իմ բարեկամ։

ԱՐՄԵՆ — Ռաջ Կապուրը գուդ արտիստ, մենք նրան սիրում ենք։

ՈՍՏԻԿԱՆ — Օ՜հ, օ՜հ, Ռաջ, բխայ, բխայ։



ԽՈՐԵՆ — Բայց այդ ի՞նչ տարօրինակ մարդ է քանդակված պատին։

ԱՆԱՀԻՏ — Եվ որքա՜ն ձեռքեր ունի։

ԱՐՄԵՆ — Դա հնդիկների արվեստի ու գեղեցկության աստվածուհին է։

ՍՈՒՐԵՆ — Ինչ սարսափելի՜ է։

ԽՈՐԵՆ — Տեսե՛ք, տեսե՛ք, սա երևի հնդիկ միլիցիոներ է։

ԳԵՎՈՐԳ — Չէ՛ մի, միլիցիոները այդպես չի հագնվում։

(Ձևացնելով «Թափառաշրջիկ» ֆիլմում Ռաջ Կապուրի կերպարը, երգում և պարում է նրա նման, դրանով իսկ մեծ բավականություն պատճառելով մեր հերոսներին)։

ԲՈԼՈՐԸ (Ծափահարում են)։ Ռա՜ջ, գուդ, բխա՜յ, բխա՜յ։

ԱՆԱՀԻՏ — Ա՜խ, ինչ լա՜վ եք երգում, քեռի։ Շնորհակալ ենք։

1. Ցտեսություն, տղաս։

ՈՍՏԻԿԱՆ — Իսկ դուք ովքե՞ր եք և ու՞ր եք գնում:
ԱՐՄԵՆ — Մենք հոկտեմբերիկներ ենք, մենք փնտրում ենք Ջոնիին:
ՈՍՏԻԿԱՆ — Ջոնի ... ա՜խ Ջոնի: Այս այստեղ, այս վրանում կա մի Ջոնի, այո՛, այո՛, Ջոնի, շքեղ կրկեսի Ջոնին: (Ոստիկանը ձգում է վրանի պարանը, բացվում է վրանը: Դեպի երեխաներն է գալիս մի հսկա փիղ):
ԱՆԱՀԻՏ — Օ՜յ, օ՜յ ի՜նչ մեծ փիղ է, ես դրան մեր գազանանոցում եմ տեսել:
ԳԵՎՈՐԳ — (Վախեցած): Վա՜յ, վա՜յ, դեպի մեզ է գալիս:
ՍՈՒՐԻԿ — Փախչենք:
ԱՐՄԵՆ — Մի՛ վախեցեք, կրկեսի փղերը անվտանգ են:
ԽՈՐԵՆ — Ինչ շո՜գ է այստեղ: Այնպե՜ս կուզեի լողանալ:
(Փիղը ձգում է կնճիթը և ամբողջ ուժով կընճիթում եղած ջուրը մղում է մեր հերոսների վրա: Նրանք ընկնում են այս ու այն կողմ: Լսվում է անզուսպ քրքիջ):
ՈՍՏԻԿԱՆ — Հա՛, հա՛, հա, հոփացան, հոփացան, հա՛, հա՛, հա՛:
Հանկարծ փիղը կնճիթով Խորենին բարձրացնում է վերև, այնքան վերև, որ Խորենի համար սարսափելի է դառնում:
ԽՈՐԵՆ — Ես օդում եմ, ես կընկնեմ:
ԱՐՄԵՆ — Ամուր բռնիր կնճիթից:
ՈՍՏԻԿԱՆ — (Շարունակում է ծիծաղել): Օ՜հ, օ՜հ, հա՛, հա՛, հա՛, բխա՜յ, բխայ, հա՛, հա՛, հա:
ԱՆԱՀԻՏ — Սիրելի՛ հսկա, մեր լա՜վ փղիկ, խնդրում ենք, իջեցրե՛ք մեր ընկերոջը:
ՈՍՏԻԿԱՆ — Ջոնի, մե՜յ Ջոնի: (Երևում է Ջոնին կրկեսային շլացնող տարազով):
ՋՈՆԻ — Ի՞նչ կա, ո՞վ է ինձ հարցնում:
ՈՍՏԻԿԱՆ — Ինչպես ես նրանց կոչում, հա՛, հիշեցի, հոկտեմբերիկներ: Նրանք ինչ-որ Ջոնիի են փնտրում:
ԱՐՄԵՆ — Ո՛չ, ո՛չ, այդ դուք չեք, մենք փնտրում ենք մեր փոքրիկ սևամորթ Ջոնիին:
ՋՈՆԻ — Օ՛հ, իմ բարեկամներ, աշխարհում Ջոնիները շատ են, նրանք հազարներ են:
ԽՈՐԵՆ — (Վերևից): Քեռի Ջոնի, ասացեք ձեր փղին՝ իջեցնի ինձ ներքև:
ՋՈՆԻ — (Նկատելով Խորենին): Այդ ո՞վ է: Նա քեզ սիրում է, նա երեխաներ շատ է սիրում: (Շոյում է փղի ծունկը): Իջեցրո՛ւ նրան, իջեցրո՛ւ, սիրելիս: (Փիղը իջեցնում է Խորենին):
ԽՈՐԵՆ — Շնորհակալ ենք, քեռի: Վերևում այնպես սարսափելի էր:
ՍՈՒՐԻԿ — Քեռի Ջոնի, փիղը ձեզ լսո՞ւմ է և հնազանդվու՞մ:
ՋՈՆԻ — Իհարկե, չէ՞ որ ես կրկեսային արտիստ եմ, դուք չգիտե՞ք, ինչ է: Ուզո՞ւմ եք՝ հրաշքներ ցույց տամ:
ԲՈԼՈՐԸ — Ուզում ենք, ուզում ենք:
ՋՈՆԻ — Դուք տեսնո՞ւմ եք այս փղին: Ապա նայեցե՛ք: (Օդում մի քանի անգամ շարժում է ձեռքի փայտիկը): Հը, հո՛պ: (Հանկարծ փղի



կանգնած տեղում ծուխ է բարձրանում, ապա ծուխը դառնում է կապույտ-կարմիր լեզուներով բոց, բոցը անհետանում է, և փղի փոխարեն ծնվում է մի գեղեցիկ հնդկուհի):

ԱՆԱՀԻՏ — *Ա՜խ, ի՜նչ գեղեցիկ է։ Տեսեք, նա պարում է մեզ։* (Հնդկուհին հնդկական ձևով պարում է)։

ՋՈՆԻ — (Նորից փայտը պտտեցնելով օդում): Հո՛պ: (Նվագում է չերևացող նվագախումբը, հնդկուհին երաժշտության տակ սկսում է երգել և «կոտրատվելով» պարել: Թռչունների դայլայլը, գույնզգույն լույսերի հեղեղը բեմում ստեղծում են մի հեքիաթային աշխարհ: Պարն ու երգը ավարտվում են): *Հը՛, հո՛պ:* (Նորից բոցեր, և պարուհին դառնում է մի գեղեցիկ սիրամարգ):

ԱՐՄԵՆ — *Ա՛յ քեզ հրաշք, ո՞ւր չքացավ նա ...*

ՍԻՐԱՄԱՐԳ — (Թռչունի նման)։ *Ծի՜վ, ծի՜վ, ծի՜վ, ծի՜վ, ծի՜վ։*

ԱՆԱՀԻՏ — *Ի՜նչ գեղեցիկ սիրամարգ է։*

ՋՈՆԻ — *Կուզե՞ս նվիրեմ քեզ։*

ԱՆԱՀԻՏ — *Դուք որքան բարի՜ եք, քեռի՛ Ջոնի։*

ՋՈՆԻ — (Պտտեցնում է փայտիկը, սիրամարգը թռչում նստում է Անահիտի ուսին): *Օ՜հ, ես կուզենայի այնպիսի մի մեծ բարություն անել ձեզ, իսկ սա ի՜նչ բարություն է որ։*

ԱՆԱՀԻՏ — *Քեռի Ջոնի, դուք հնարագետ եք, դուք ամեն ինչ կարող եք անել, գտեք մեր Ջոնիին։*

ՋՈՆԻ — *Օ՜հ, ձեր փոքրիկ Ջոնիին գտնելը այնքան էլ հեշտ չէ։ Պետք է ամբողջ աշխարհը շրջել։*

ԱՐՄԵՆ — *Իսկ դուք շա՞տ երկրներում եք եղել։*

ՋՈՆԻ — *Ամերիկա, Անգլիա, Ճապոնիա, Ավստրալիա, միայն ձեր երկիրը չեմ տեսել։*

ԱՆԱՀԻՏ — *Ա՜խ, եկեք Հայաստան, մենք ձեզ համեղ մրգերով կհյուրասիրենք։*

ՋՈՆԻ — *Ասում են գեղեցիկ է Հայաստանը։ Բայց մենք ինչպե՞ս պիտի գտնենք ձեր Ջոնիին։*

ԱՐՄԵՆ — *Նա մի հարուստ յանկի տեր ունի։ Ջոնին չի ուզում նրա ծառան լինել։*

ՋՈՆԻ — *Աշխարհում դեռ տերեր շատ կան և նրանք հեշտությամբ չեն ազատի ջոնիներին։*

ԱՆԱՀԻՏ — (Լացակումած)։ *Դուք պետք է օգնեք մեզ, քեռի Ջոնի, դուք այնքան լա՜վն եք։*

ՋՈՆԻ — *Լա՜վ, գնանք շարունակենք մեր ճանապարհը, գուցե մի տեղ հանդիպենք ձեր Ջոնիին։*



ԱՐՄԵՆ — *Դուք մեզ հետ եք, և մենք գնում ենք Ջոնիի հետևից։ Ինչպիսի՜ ուրախություն, մենք կգնանք մեր նավով, կգնանք այնքան ժամանակ, քանի դեռ չենք գտել մեր Ջոնիին։*

Լույսերը հանգչում են:

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — (Հայտնվելով)։ *Ես շատ երկրներում եմ եղել, հանդիպել եմ բազում երեխաների. բայց սրանք ուրիշ են ... ես էլ պիտի փորձեմ նրանց, ես կդժվարացնեմ նրանց ճանապարհը ... Ծով, փոթորիկ, այո, տեսնեմ նրանք չե՞ն հրաժարվի Ջոնիին գտնելու մտքից։* (Անհետանում է)։

Լուսավորվում է բեմը: Օվկիանոսն է: Ահեղ ալիքների գրկում ճոճվում է նավը: Տախտակամածի վրա են մեր հերոսները և նրանց հետ՝ Ջոնին:

ՋՈՆԻ — Քամին փչում է հարավից, ուղղությունը վերցնել արևելք: Պարզել առագաստները: (Կայծակ, որոտ, մռնչում է երկինքը, ծեղեղի նման թափվում է անձրևը):

ԱՐՄԵՆ — Ջուրը լցվում է նավը:

ԱՆԱՀԻՏ — Ես վախենում եմ նավը շուռ գա:

ՋՈՆԻ — Եղեք քաջ ու անվախ, իմ փոքրիկ բարեկամներ, ղեկը թեքել ձախ, այդպես ... ձգե՛ք պարանները: (Հանկարծ լսվում է թռչունի կանչ): Ո՛հ, ես թռչունի ձայն եմ լսում ... Դուք լսում եք:

ԽՈՐԵՆ — Այո՛, այո՛, ես լսում եմ, այդ ծովափնյա թռչուն է:

ԱՐՄԵՆ — Տեսե՛ք, տեսե՛ք, նա ճախրում է մեր վերևում (Նստեց առագաստաձողի վրա):

ՋՈՆԻ — Ո՛հ, իմաստուն թռչուն: Մենք փրկված ենք: Նա ափից թռել հասել է այստեղ, ուրեմն ցամաքը հեռու չէ: Դու իմ բարի ու գեղեցիկ թռչնակ, ապա ցույց տուր ճանապարհը: (Թռչունը պտույտ կատարելով նավի վրա, սլանում է ինչ-որ ուղղությամբ): Թեքել նավը թռչունի ուղղությամբ: Առա՛ջ, բարեկամներ ...

ԽՈՐԵՆ — Ես տեսնում եմ ցամաքը, ես տեսնում եմ ցամաքը:

ԲՈԼՈՐԸ — Ուռա՛, մենք փրկված ենք ... Մենք կգտնենք մեր Ջոնիին:

ՋՈՆԻ — Հանգիստ, հանգիստ, մի քանի վայրկյան և մենք կլինենք ցամաքի վրա: (Նավը մոտենում է ափին): Մենք օվկիանոսներ ենք կտրել անցել, մենք հռչակավոր ճանապարհորդներ ենք, ուռա՛: (Որոտում է կայծակը, բեմը մթնում է: Խավարում լսվում են ձայներ. «Դեպի առա՛ջ», «առաջ չգնա՛լ, ծանծաղուտներ են», «Հե՜յ-հե՜յ, հե՜յ, գցե՛լ խարիսխը, իջեցնե՛լ առագաստները ...»

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ (Երևալով): Ո՛հ, ամենակարող աստված, նորից նրանք շարունակում են ճանապարհը ... Մինչդեռ ես արդեն ուժերս կորցնում եմ, փորձեմ ևս մեկ անգամ իմ հնարամտությունը: Ես նրանց ջունգլիները, այո, անանցանելի ջունգլիները կտանեմ: Վերջին փորձությունը թող լինի ... (Անհետանում է):

## ՊԱՏԿԵՐ ՉՈՐՐՈՐԴ

Աֆրիկական բնապատկեր: Ձեռնակառքի մեջ խռմփացնում է հարուստ յանկին, նրա գլխավերևում՝ փոքրիկ Ջոնին փետուրներից պատրաստված մեծ հովհարով նրան զով է անում:

Ձախ կողմից մտել են մեր հերոսները և լուռ դիտում են այս տեսարանը:

ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ — Ա՜խ, ե՞րբ պետք է ազատվեմ այս մարդուց, թևերս ցավում են, ոտքերս՝ ծալվում: Ա՜խ, եթե ես գրագետ լինեի և գրեի նամակ, կպատմեի բոլորին, որ դաժան է իմ տերը:

ՍՈՒՐԻԿ — Այդ նա է, Ջոնին:

ԱՆԱՀԻՏ — Դու որտեղի՞ց իմացար:

ՍՈՒՐԻԿ — Չլսեցի՞ր, ինչ է: Նա ասաց, որ նամակ է գրել:



ԱՐՄԵՆ — Նա ասաց, որ նամակ կգրի:

ԳԵՎՈՐԳ — Ի՞նչ եք վիճում, միևնույն չէ՞, գրել է, թե կգրի: Նա Ջոնին է: Մեր պապի պատմած Ջոնին:

ՋՈՆԻ — Ավելի լավ է իրեն հարցնենք: Է՜յ, տղա, քո անունն ի՞նչ է:

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Սուս, տերը կզարթնի, և ես կորած եմ։ Դուք ովքե՞ր եք։*

**ՋՈՆԻ** — *Անունդ ասա, տղա՛ս, մենք քո բարեկամներն ենք։*

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Իմ տերը ինձ փոքրիկ սև Ջոնի է կանչում։*

**ԱՆԱՀԻՏ** — (Համարյա ճչալով)։ *Ջոնի՜, նա՜ է, մեր Ջոնին է։*

**ԲՈԼՈՐԸ** — *Ջոնի՛, Ջոնի՛, մեր լա՜վ, մեր սիրելի՜ Ջոնի։ Մենք ստացել ենք քո նամակը, մենք եկել*



*ենք քո հետևից։* (Քաշքշում են ու ուրախանում, աղմկում)։

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Ի՞նչ եք ասում, ես ականջներիս չեմ հավատում, դուք ուզում եք ինձ ազատե՞լ։ Ո՛չ, ո՛չ, եթե նա զարթնի, գիտե՞ք ինչ կանի ինձ։*

**ԽՈՐԵՆ** — *Դու մի՛ վախենա այդ ուռած գորտից։*

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Նա իմ տերն է, նրանից բոլորն են վախենում։*

**ՋՈՆԻ** — *Ջոնի, իմ այս փոքրիկ բարեկամները հեռո՜ւ, հեռո՜ւ աշխարհից են եկել, նրանք ստացել են քո նամակը։*

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Ի՞նչ նամակ, ես նամակ չեմ գրել։*

**ԱՐՄԵՆ** — *Նա վախենում է, մի՛ վախեցիր, Ջոնի՛, եթե նամակ չես էլ գրել, միևնույն է, դու մեր Ջոնին ես։*

**ԱՆԱՀԻՏ** — *Հիմա նա կզարթնի։ Փախչե՞նք, Ջոնի՛, փախչե՞նք այստեղից։*

**ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ** — *Ի՞նչ եք ասում։ Դուք չեք ճանաչում նրան։*

**ԽՈՐԵՆ** — *Այդ մե՞նք չենք ճանաչում նրան, կտեսնենք։* (Խփում է թմբուկին։ Յանկին վեր է թռչում)։

**ՅԱՆԿԻ** — *Այդ ո՞վ էր։ Սև սատանա, դու չգիտե՞ս, որ հիմա իմ հանգստի ժամն է։*

**ԽՈՐԵՆ** — *Պարոն յանկի, դուք մի՛ զռացեք, մենք ձեզանից չենք վախենում։*

**ՅԱՆԿԻ** — (Նոր նկատելով մյուսներին)։ *Օհո՜, դո՞ւք ովքեր եք։*

**ԱՆԱՀԻՏ** — *Մենք հոկտեմբերիկներ ենք։*

**ՅԱՆԿԻ** — *Ի՞նչ հոկտեմբերիկ, դա ի՞նչ բան է։* (Ջոնիին)։ *Ի՞նչ է, դու վաճառո՞ւմ ես այդ, այդպես ասած, հոկտեմբերիկներին։ Խնդրեմ, ես կարող եմ նրանց էլ գնել, ես ոսկի շատ ունեմ։*

**ԱՐՄԵՆ** — (Ջղային) *Ձեր ոսկիները ձեզ պահեք, այ, եթե մեր երկրում լինեիք, ձեզ ցույց կտայինք, թե ինչ է նշանակում մարդ վաճառել։*

**ՅԱՆԿԻ** — *Օհո՜-օհո՜, ես առաջին անգամ եմ տեսնում այդպիսի երես առած երեխաներ, երևում է, որ ուրիշ երկրից եք։*

**ՋՈՆԻ** — *Պարոն, նրանք եկել են այս փոքրիկ Ջոնիի հետևից։ Նրանք ուզում են տանել նրան։*

**ՅԱՆԿԻ** — *Տանել, ո՞ւր, ինչո՞ւ։*

**ԱՐՄԵՆ** — *Որ նա էլ մեզ նման դպրոց գնա, կրթված քաղաքացի դառնա։*

**ՅԱՆԿԻ** — *Քաղաքացի, հա՜, հա՜, հա՜, քաղաքացի, նրանից ի՞նչ քաղաքացի կստացվի։ Կորե՛ք այստեղից, դատարկ գլուխներ։ Քաշի՛ր սայլակը, սատանի ճուտ, ես ննջել եմ ուզում։*

**ԱՐՄԵՆ** — *Պարո՛ն, ազա՛տ արձակեք Ջոնիին, մենք խնդրում ենք։*

**ՅԱՆԿԻ** — *Երեխեք, դուք, ինչ է, ցնդե՞լ եք։ Չէ*



որ նա իմ ծառան է, հապա էլ ո՞վ կմաքրի իմ կոշիկները, ո՞վ կքաշի իմ սայլակը, ո՞վ շոգ ժամանակ զով կանի ինձ: Հետո նա շատ փոք արժե, շա՜տ:

ՋՈՆԻ — Պարոն, դուք անխիղճ և անհոգի մարդ եք: Առեք այս փողը ձեզ (շպրտում է քսակը), միայն թե շուտ արձակեք Ջոնիին:

ՅԱՆԿԻ — (Ձեռքում տնտղելով քսակը): Քիչ է, չեմ տա:

ԱՆԱՀԻՏ — Դուք չար մարդ եք, ձեր փորում օձեր կան, ձեր փորում դև կա:

ՅԱՆԿԻ — (Ուզում է սայլակից դուրս գալ, չի կարողանում, ընկնում է): Օ՜ֆ, օ՜ֆ ... դու ինչ ասացի՞ր, անպիտան հոկտեմբերիկ:

ԱՆԱՀԻՏ — Ձեր փորում կայծակ կա ...

ՅԱՆԿԻ — Ինչե՞ր եմ լսում: (Ծափ է տալիս): Ոստիկաննե՛ր, բռնեցե՛ք սրանց, գնդա՛ն նետեցեք:

ՋՈՆԻ — Ինչո՞ւ, պարոն: Նա ճիշտ է ասում, իրոք, ձեր փորում օձեր կան, կայծակ կա: Իսկ եթե նրա ասածը ճիշտ լինի, խոստանո՞ւմ եք ազատել Ջոնիին:

ՅԱՆԿԻ — Խոստանում եմ, իսկ եթե սուտ լինի, կախել կտամ ձեզ կամ ստրուկներ կդարձնեմ ...

ՋՈՆԻ — Համաձայն ենք:

ԱՆԱՀԻՏ — Քեռի Ջոնի, ես հենց այնպես ասացի, ես ինչ իմանամ, թե ինչ կա նրա փորում: Նա մեզ կկախի, հի՛, հի՛, հի՛: (Լաց է լինում):

ՅԱՆԿԻ — Հը, վախեցա՞ք, անպիտան հոկտեմբերիկներ, հիմա ես ձեր ձեռքերը կշղթայեմ և կտանեմ իմ կալվածքը:

ՋՈՆԻ — Մի՛ շտապիր, պարոն ... հիմա, հիմա: (Պտտեցնում է նրա շուրջը կրկեսային փայտիկը և ինչ-որ անհասկանալի խոսքեր ասում): Հո՛պ, դո՛ւրս արի, դո՛ւրս արի: (Յանկիի բերանից հանում է մի մեծ օձ): Տեսա՞ք, հիմա Ջոնին ազա՞տ է:

ՅԱՆԿԻ — Ո՛չ, դու ինձ խաբում ես ... հապա կայծա՞կը ...

ՋՈՆԻ — Լավ, օ՜հ, երկնային աստված, օ՜հ, արև, օ՜հ, երկինք, դո՛ւրս բեր այս հրեշի փորից այն ահավոր կայծակը, որ նա կուլ է տվել ծնվելու օրը: Մերսա, դերսա, հոպ-հե՜: (Լսվում է կայծակի որոտ: Յանկիի բերանից և աչքերից

ցայտում են կրակի բոցեր։ Լավում է ուժեղ դղրդյուն)։

ՅԱՆԿԻ — Օ՜հ, բավական է, ես պարտված եմ, թողեք ինձ հանգիստ։

ՋՈՆԻ — Ջոնի, իմ փոքրիկ եղբայրիկ, դու հիմա ազատ ես, դու երջանիկ ես, գնա քո այդ բարի և լավ բարեկամների հետ, գնա նրանց երկիրը ...

ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ — (Լաց է լինում)։ Ես, ես ազատ եմ, ուրեմն նա էլ ինձ չի ծեծի։

ԱՆԱՀԻՏ — Դու լա՞ց ես լինում, Ջոնի։

ՓՈՔՐԻԿ ՋՈՆԻ — Ուրախությունից, ուրախությունից եմ լաց լինում։

ՋՈՆԻ — Դե, պարոն, քաշիր սայլակը, մեզ պետք է նավ հասցնել, մի անգամ էլ դու քաշիր, որ հասկանաս քաշողի վիճակը։ (Յանկին ստիպված լծվում է սայլակին, մյուսները նստում են սայլակը)։ Հայդե՜ ... (Հանկարծ բոլորը իջնում են)։

ԲՈԼՈՐԸ — Ո՛չ, ոչ, մենք չենք ուզում, որ նա լծվի սայլակին։

ՋՈՆԻ — Թող ձեզ տեղ հասցնեն իմ հրեղեն ձիերը։ (Պտտեցնում է օդում մտրակը)։ Հը՛, հո՛պ։ (Հայտնվում են ձիերը՝ գեղեցիկ կառքով։ Երեխաները նստում են կառքը)։

ԱՆԱՀԻՏ — Վերցրեք իմ սրինգը, քեռի Ջոնի, պահեցեք հիշատակ։

ՋՈՆԻ — Շնորհակալ եմ, աղջիկս, կպահեմ այս փոքրիկ գործիքը, և նա միշտ կհիշեցնի ինձ ձեր մասին։ Գնացեք հաջողությամբ, իմ փոքրիկ հերոսներ, տարեք Ջոնիին, նա ձեզ հետ իրեն երջանիկ կզգա։ Բարևներ տարեք ձեր երկրին։ Ձեր երեխաներին ասացեք, որ աշխարհում դեռ շատ ու շատ ջոնիներ կան, որոնք սպասում են ձեզ նման բարի ու քաջ երեխաների։ (Թափահարում է գլխարկը, շառագունում է արևիլքը, սլանում է կառքը։ Ջոնին երգում է նեգրական այն երգը, որի մեղեդիները այստեղ բերեցին մեր բակի հերոսներին)։

Խավարում է բեմը, հայտնվում է լույսով ողողված Հեքիաթասացը։

ՀԵՔԻԱԹԱՍԱՑ — Թռան գնացին Ջոնիի բարեկամները, նրանք չվախեցան ոչնչից, որովհետև բարի ու գեղեցիկ նպատակ ունեին։ Աշխարհներ եմ շրջել, հազար ու մեկ գիշերների հեքիաթներ եմ պատմել, բայց այս հեքիաթը բոլորից գեղեցիկն էր։ Մնաք բարով, երեխաներ, ես գնամ, թույլ եմ ամենուրեք և աշխարհի երեխաներին պատմեմ այս հեքիաթը՝ սևամորթ Ջոնիի և նրա լավ բարեկամների մասին։

Հեքիաթասացը ռադիո ազդանշանը տալով և գույնզգույն լույսեր արձակելով՝ պտույտ է գործում բեմի խավարում և աներևութանում է հանդիսատեսի աչքի առաջ։

Վ ա ր ա գ ու յ ր



«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՎԵԼՎԱԾ ՏԻԿՆԻԿԱՅԻՆ ԹԱՏՐՈՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Տրվում է անվճար՝ «Պիոների» 1966 թ. 11-րդ համարի հետ